րութիւնը, ուր կը չէզոքէր թէ՝ ըմբոստ ներկայացուցիչներու Միացեալ Նահանգներ մուտքի արտօնութիւն տալով՝ Ոստրէնկէթըն իր դիրքը չէ փոխած ալժերիական հարցին մէջ: Ընդհակառակն, Միացեալ Նահանգները զօրավիգ կը կենան Ֆրանսայի:

Հնդկաստանի ներկայացուցիչ Շեխար Ժհա ամերիկեան հեռատեսիլէն խօսելով Ալժերիոյ մասին, ըսաւ.— Կարծեմ թէ, ընդհանուր կարծիքին համաձայն, կրնամ ըսել՝ որ այս հարցը պէտք չէ աւելի բարդացնել. ընդհակառակն, վիճաբանութեանց ընթացքին որոշ մեղմացում մը ցոյց պէտք է տրուի:

Միւս կողմէ, ՄԱԿի մէջ քուէարկուած որեւէ բանաձեւ նպաստաւոր է Ալժերիոյ «Ազատամեայ կառավարութեան» համար: Նպաստաւոր՝ նոյնիսկ երբ որոշում պատասխանել տը Կոլի կոչին, որով հետեւ այդ պարագային՝ ըմբոստները ՄԱԿի միջամտութեամբ պիտի բանակցին Ֆրանսայի հետ: Կրակը դադրեցնելու առաջադրութեամբ ըլլալիք այդ բանակցութիւնները միայն զինուորական պիտի չըլլան — այլ՝ նաեւ քաղաքական, ալժերիական հարցը փոխադրելով միջազգային գետնի վրայ:

Կը մնայ գիտնալ թէ քանի՞ ճառեր պիտի արտասանուին եւ վիճաբանութիւններ քանի՞ օր պիտի տեւեն, ամէն պարագայի մէջ, ՄԱԿը դժուարին կացութեան մը մատնուած է Ֆրանսայի բռնած դիրքով. բոլոր երկիրներն ալ պիտի աշխատին որոշ բացատրութիւններ գտնել՝ կարենալ միջամտելու անհամար «Ֆրանսայի ներքին գործերուն»:

## ԾԱԽՈՒ Է

Գեղեցիկ յարկաբաժին մը, չորս սենեակ, լոգիա, ժառան, երրորդ յարկ, նոր շէնքի մէջ, ամէն յարմարութիւն, արտենեկ 15րդ թաղամաս, հանդարտ (ռեզիտանսիէլ):

Գրել «Յառաջ»ին, որ կը փոխանցէ:

## ՅԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Մարսէյլ – Կարտանն-Սիւրսիւրի Հայր. Միութիւնը խորին ցաւով կը ծանուցանէ մահը Տիկին Աղնիւ Պետրոսեանի, որ տեղի ունեցաւ Ուրբաթ, 18 Սեպտեմբեր, Մարսէյլի մէջ: Այս առթիւ ցաւակցութիւններ կը յայտնէ ընկեր Արիստագէս Պետրոսեանի եւ բոլոր ընտանեկան պարագաներուն:

Փոխան ծաղկեպսակի Սիւրսիւրի Հայրենակցական Միութիւնը 1500 Ֆր. կը նուիրէ, Հայկազ Պօյաճեան 500 Ֆր., Սերոբ Գինոսեան 500, Գրիգոր, Զաւէն, Ստեփան հինգ հարիւրական, ընդհ. գումար չորս հազար ֆրանք՝ երկու հազար Ֆր. Մշակութային Տան եւ հազար Ֆր. «Յառաջ»ի բարգաւաճման:

(Ստանալ «Յառաջ»էն):

### ՆՈՒԷՐՆԵՐ

Արայ Տէր – Վարդանեան (Մարսէյլ) Ամերիկա մեկնումին առթիւ կը նուիրէ. 2500 ֆրանք «Յառաջ»ի բարգաւաճման:
1250 Ֆր. Շ. Միսաքեան սրահին:

(Ստանալ «Յառաջ»էն):

1250 Ֆր. «Հայ – Բոյժ»ի:

×

Տիկին Դարբինեան իր եղբօր՝ Լեւոն Մարտիկեանի յիշատակին երեք հազար ֆրանք կը նուիրէ հանգստեան տունեբուն, երեք հազար Աղքատախնամին, երկու հազար Կապոյտ Խաչին եւ երկու հազար «Յառաջ»ի բարգաւաճման:

(Ստանալ «Յառաջ»էն):



# Հ. Յ. Դ.

## ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. «Շաւարշ Միսաքեան» խումբի վարչութիւնը, կազմակերպած է դասախօսութիւն մը, Չորեքշաբթի 2 Դեկտեմբեր ժամը 21ին, «Ահարոնեան» ակումբը:

Դասախօս՝ ընկ. Ա. ՔԷՕՍԷԵԱՆ:

Կը հրաւիրուին բոլոր ընկերներն ու համակիրները:

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէն հետեւեալ խումբերը ժողովի կը հրաւիրէ.—

Քրիստափոր ենթակոմիտէն 5 Դեկտ. Շաբաթ իրիկուն ժամը 20·30ին:

Հայաստան ենթակոմիտէն 5 Դեկտ., Շաբաթ իրիկուն ժամը 20·30ին:

Մուրատ խումբը 6 Դեկտ. Կիրակի կէսօրէ ետք ժամը 15ին:

Արամ խումբը 6 Դեկտ. Կիրակի առաւ., ժամը 10ին:

Թաթուլ խումբը 6 Դեկտ. Կիրակի առաւ. ժամը 10ին:

Ակնունի ենթակոմիտէն 12 Դեկտ. Շաբաթ իրիկուն ժամը 20·30ին:

Համազասպ ենթակոմիտէն 13 Դեկտ. Կիրակի առաւ. ժամը 10ին:

Վռամեան ենթակոմիտէն 13 Դեկտ. Կիրակի կէսօրէ ետք ժամը 15ին:

Զաւարեան ենթակոմիտէն 19 Դեկտ. Շաբաթ իրիկուն ժամը 20·30ին:

Ընկ. Կարօ խումբը 20 Դեկտ. Կիրակի կէսօրէ ետք ժամը 15ին:

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այրի Տիկին Սարգիս Տէօքմէճեան, Օրիորդներ Արփինէ եւ Ցոլինէ Տէօքմէճեան, ինչպէս նաեւ ընտանեկան բոլոր պարագաները շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց, որոնք անձամբ, հեռագրով, նամակով, ծաղկեպսակով ցաւակցութիւն յայտնեցին իրենց ամուսնոյն եւ հօր՝

ՍԱՐԳԻՍ ՏԷՕՔՄԷՃԵԱՆԻ

կսկծալի մահուան առթիւ:

×

Կաթ. Պատուիրակ Սերովբէ Եպիսկ. Մանուկեանի առաջնորդութեամբ եկեղեցաշէն յանձնախումբի անդամները, երկրորդ այցելութիւնը տուին Լիոնահայ ազգայիններու եւ ի նպաստ Լիոնի եկեղեցւոյ շինութեան շնորհակալութեամբ ստացան հետեւեալ կարեւոր գումարները բարեսէր ազգայիններէ.—

Պ. Պ. Փափազեան եղբարք Գրիգոր եւ Տիգրան հարիւր հազար ֆրանք, Կարապետ Շարլ Մանուկեան, Յարութիւն Մանուկեան, Ռոպէր Աւագեան (ատամնաբոյժ), Արման Մեսրոպեան, Օննիկ Քէօլէեան, Կարապետ Սահակեան, Գեղամ Ծատուրեան Նէրոնէն 50·000ական Ֆր: Ժորժ Եթերեան 30000: Մագսուտ Մանիկեան 20 հազար, Շահպազեան, Յակոբ Կէվիկեան տասնական հազար, Վէգ Սփոր Քոնֆէքսիօն հինգ հազար, Պ. Յակոբ Պըշագճեան (Մոնպրիսոնէն) հինգ հազար ֆրանք:

### ԿԱՐՄԻՐ ԽԱՉ

Հայ Կարմիր Խաչի Ֆէսանվիլիէի օդափոխութեան կայանին կը նուիրեն.—

Տիկին Քօնի Խորասանճի հինգ հազար ֆրանք, Տէր եւ Տիկին Ճիւհէրեան երկու հազար, Տէր եւ Տիկին Միսաքեան (Իսի լէ Մուլինօ) հազար, Տէր եւ Տիկին Մայիսեան հազար, Տէր եւ Տիկին Անկիցեան հազար, Տէր եւ Տիկին Ալիքսանեան հազար, Տէր եւ Տիկին Պզտիկեան հազար, Տէր եւ Տիկին Էլմասեան (Իսի լէ Մուլինօ) հազար, Պ. Հայրապետեան 500, Պ. Փափազեան 500, Պ. Պայրամեան 500 Ֆր:

Հայ Կարմիր Խաչի Փարիզի դարմանատան կը նուիրեն.—

Տէր եւ Տիկին Տօնիկեան (Իսի լէ Մուլինօ) հազար ֆրանք, Տէր եւ Տիկին Օհանեան 500, Տէր եւ Տիկին Պօյաճեան 500, Տէր եւ Տիկին Պզտիկեան 500, Ոմն 500 ֆրանք:

Տէր եւ Տիկին Պարէտ Քամպուրճեան կը նուիրեն երկու հազար ֆրանք, ի նպաստ Հայ Կարմիր Խաչի Ֆէսանվիլիէի օդափոխութեան կայանին, փոխան ծաղկեպսակի, ողբացեալ Օննիկ Պէշգաշեանի մահուան առթիւ:

Imprimerie Spéciale du Journal « Haratch »

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ

Մշակութային Միութեան Փարիզի Վարչութիւնը իր անդամները կը հրաւիրէ ընդհ. ժողովի, որ տեղի պիտի ունենայ, Շաբաթ իրիկուն, 5 Դեկտեմբեր, սրճարան Քառէի սրահին մէջ:

Օրակարգ.— Վարչութեան համարատուութիւնը եւ հրաժարականը:

Նոր վարչութեան ընտրութիւն եւ թեկնածութիւններ:

Ներկաներու թիւը մեծամասնութիւն պիտի նկատուի:

Կը խնդրուի ներկայ ըլլալ:

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ՖՐԱՆՍԱՀԱՅ ԼՍԱՐԱՆ

Հերթական հաւաքոյթը, այս Չորեքշաբթի գիշեր, ժամը 21ին, Քառէի սրահը: Վիճաբանական.— Միջին սերունդին նակատագիրը. դրական եւ բացասական կողմեր:

Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴ

## ՊԱՐԱՆՑԻԿ ՑԵՐԵԿՈՅԹ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Անիէռ – Պուա Քոլոմպի Սօսէ – Սերոբ խումբին կողմէ, Կիրակի Դեկտեմբեր 6, ժամը 15ին, Քլոշէթի սրահը, 149պիս, Ավընիւ տ'Արժանթէօյ:

Ճոխ յայտագիր:

Կը հրաւիրուին ծնողները:

Մուտքը ազատ է:

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ԴՊՐՈՑԱՍԷՐԻ

Գեղարուեստական ցերեկոյթը

ՄԱՐՏ 27ԻՆ

### ՄԱՐՍԷՅԼԻ ՀԱՅԵՐՈՒՆ

Պատրաստուեցէք Ամասիոյ Երիտասարդացի տարեկան մեծ պարահանդէսին:

Դեկտեմբեր 12, Շաբաթ գիշեր մինչեւ լոյս, Ալհամպրայի շքեղ սրահներուն մէջ, 340 Պուլվ. Շավ:

մտածէ Նախագահ տը Կոլի այն յայտարարութեան մասին՝ որու համաձայն Փարիզ կը ճանչնայ Օտըր – Նայսի գիծը՝ իբրեւ լեհեւգերմանական սահման: Ատրնաուըր. «հարկ չկայ պատասխանելու այնպիսի հարցումներու՝ որոնց պատասխանները յայտնի են »:

Գերման Վարչապետը չորեքշաբթի օր Պոն վերադարձաւ: Օրլիի օդակայանին մէջ, մեկնելէ առաջ ճառ մը խօսեցաւ, դարձեալ շեշտելով այն պարագան՝ թէ Գերմանիոյ եւ Ֆրանսայի գործակցութիւնը երկու ժողովուրդներու բարօրութեան նպաստելով, կը նպաստէ նաեւ Եւրոպայի զօրացման եւ խաղաղութեան պահպանման:

Նախապէս, Զօր. տը Կոլ կարճ ճառ մը խօսած էր, յայտարարելով թէ երկու երկիրներու ներկայացուցիչներուն հանդիպումը կարեւոր էր՝ աշխարհի ապագային համար. «Այդ խօսակցութեանց մէջ Ֆրանսա եւ Գերմանիա միասին են, իրարու կապուած են հասարակաց շահերով եւ փոխադարձ վստահութեամբ »:

---

ՖՐԱՆՍԱԿԱՆ Սպայակոյտի մէկ բանբերը յայտարարեց թէ Ֆրանսական բանակի կողքին 180.000 մահմետականներ կը կռուին:

ԺԱԳ ՏԻՒՔԼՕ Հունգարիոյ մէջ յայտարարած է թէ Խրուշչեւի Ֆրանսա այցելութեան լուրը խաղաղութեան նոր յոյս մը տուած է Ֆրանսացիներու, որոնք իրենց խանդավառութեամբ ցոյց կուտան թէ որքան սերտ է Խ. Միութեան հետ բարեկամութեան զգացումը:

ԻՐԱՔԻ Վարչապետ Քասըմ յայտարարեց թէ նոր դաւադրութիւն մը երեւան ելած է, որու կազմակերպիչներն են ուսանողները:

ՍՈՒՏԱՆԻ մէջ մահուան դատապարտուած «հինգ դաւաճանները գնդակահարուեցան» առջի օր, կը հաղորդեն Խարթումէն:

ՉԵԽՈՍԼՈՎԱՔԻՈՅ մէջ բանտարկուած գերմանացի երկու օդաչուները ազատ արձակուեցան, քառասուն օր Փրակա մնալէ ետք:

ՍԱԿԱՐԱՆ (Դեկտ. 2) — Ձոյլ ոսկի՝ 561.500, Նափոլէոն 3570, զուից. 3470, անգլ. 4640, քսան տոլարնոց 18.400, թղթադրամ (զուգահեռական շուկայ) ըստ թերլին՝ 1385, տոլար 490, զուից. 114, պելժ. 9.80, լիր 0.79, մառք 118:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Եկեղեցւոյ դիւանը իր կրթական ձեռնարկներուն համար ստացած է հետեւեալ նուէրները — Պ. Հրանդ Գալեան երկու հազար ֆրանք Կեսարիոյ եւ շրջանի նահատակներու յիշատակին: Տէր եւ Տիկին Վահրամ Մոստիչեան երեք հազար ֆր. ողբացեալ Մկրտիչ Բամուքճեանի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի:

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

3 Յունուար 1960, Կիրակի ժամը 4–24, Ֆ. Կապոյտ Խաչի Փարիզի մասնաճիւղի տարեկան պարահանդէսը, Օթէլ Լիւթէսիայի մէջ:

7 Յունուար 1960, Կապոյտ Խաչի Կեդր. վարչութիւնը Փարիզի շրջանի տասը մասնաճիւղերով կը տօնէ «Մանուկներու Օրը», Փըթի Ժուռնալի մեծ սրահին մէջ:

---

ՄԱՄՈՒԼԻ ՏԱԿ Է

## ՄԵՂՈՒԻՆ ՃԱՌԸ

Գրեց՝ ՇԱՒԱՐՇ ՆԱՐԴՈՒՆԻ 1

Գինը 200 փրանք

Դիմել Յառաջի խմբագրութեան:

## ԱՃՈՒՐԴՈՎ ՊԻՏԻ ԾԱԽՈՒԻ

8 Դեկտեմբեր 1959ին, երեքշաբթի, ժամը 10ին, Մարսէյլի նոտարներու սենեակին մէջ, 36 Րիւ Քարատի, աճուրդով պիտի ծախուի, Մարսէյլի Սէն Ժիւսթ թաղամասին մէջ, Պուլվար Ալֆա Մուբի անկիւնը, Րիւ Պրէմօն 6ա թիւին տակ գտնուող, 88 քառակուսի մեթր տարածութեամբ եւ բնակութեան ու արհեստագործութեան յատուկ գետնայարկ շէնք մը, զոր բարեյիշատակ տիկին Լուսի Արապաճեան կտակած է Հ. Բ. Ը. Միութեան:

Աճուրդը պիտի բացուի մէկ միլիոն ֆրանքի գինով:

Այժմ շէնքին մէջ կը բնակի ու կը գործէ հայ դերձակ մը, առանց վարձակալութեան իրաւունքի եւ պայմանագրի, պարագայ մը զոր պարտի գիտնալ ապագայ գնորդը, որուն պիտի իյնայ պահել կամ հեռացնել շէնքին մէջ գտնուող յիշեալ անձը:

Գնորդը աճուրդի կը մասնակցի Նոտարի մը կամ ավուէի միջոցով:

Ամէն տեղեկութեան համար դիմել Նոտար մեթր ՏԷՑՏԻԷ, 62, Րիւ Մօնկրան, Մարսէյլ, հեռաձայն 33-10-83:

## ՀԱՅԱՏԷՍ ՀԱՆԴԻՍԱՒՈՐ Ս. ՊԱՏԱՐԱԳ

ՎԱՏԻԿԱՆԻ ՁԱՅՆԱՍՓԻՒՌԷՆ

Այս Կիրակի, ժամը 10.30ին, կէս օրէ առաջ, բազմաձայն երգեցողութեամբ հայկական Ս. պատարագ եւ քարոզ պիտի ձայնասփռուի Վատիկանէն:

Միջին ալիք՝ 196 մ., կարճ ալիք՝ 19.84, 25.67, 31.10:



Imprimerie Spéciale du Journal « Haratch »

Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴ

## ՊԱՐԱՆՑԻԿ ՑԵՐԵԿՈՅԹ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Անիէռ – Պուա Քոլոմպի Սօսէ – Սերոբ խումբին կողմէ, Կիրակի Դեկտեմբեր 6, ժամը 15ին, Քլոշէթի սրահը, 149պիս, Ավընիւ տ'Արժանթէօյ:

Ճոխ յայտագիր:
Կը հրաւիրուին ծնողքները:
Մուտքը ազատ է:

## — ԶՈՒՇԱՏԵՏՐ —

Ֆ. Կ. ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղին ընդհ. ժողովը՝ այս Շաբաթ, կէսօրէ ետք ժամը չորսին Քաֆէ Ռեժանի մէջ: Օրակարգ — Ա) Պարահանդէս եւ յանձնախումբերու ընտրութիւն: Բ) Դպրոցական հարց: Բոլոր ընկերուհիներու ներկայութիւնը անհրաժեշտ է:

ՀԱՄԱԽՄԲ. Հայր. Միութեան ընդհ. անդամական ժողովը այս Կիրակի առաւօտ, ժամը 9ին, 7 Պուլվ. տ'Աթէն, Պար տիւ Կլոպի սրահը: Օրակարգ տեղւոյն վրայ: Վարչութիւնս կը փափաքի որ բոլոր անդամները ներկայ ըլլան այս կարեւոր ժողովին:

## ՊԱՏԱՐԱԳ

Այս Կիրակի, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ պիտի պատարագէ եւ քարոզէ, Կ. Պոլսոյ դպրեվանքի տեսուչ Գարեգին Ծ. Վրդ. Գազանճեան: Կը հրաւիրուի հայ հասարակութիւնը:

## ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ԱՒԵՏԱՐԱՆ. ԵԿԵՂԵՑԻ

8 bis, Rue des Ternes

Մեթրօ Փորթ Մայօ

Պաշտամունք այսԿիրակի առաւօտ ժամը 10.45ին:

## ՀԱՅ ԱՒԵՏԱՐԱՆԱԿԱՆ ՄԿՐՏՉ. ԵԿԵՂԵՑԻ ՄԱՐՍԷՅԼ

Պաշտամունք՝ այս կիրակի, Սէն Ժէրոմ, ժամը 9,30ին: Ռիւ Ժէմափ՝ ժամը 10,45ին:

Կը քարոզէ Վերապատուելի Հելվաճեան:

## Հ. Յ. Դ.

## ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՎԻԷՆ.— Հ. Յ. Դ. Անի կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները, այս Շաբաթ ժամը 20.30ին, Ակումբին մէջ: Բոլոր ընկերու ներկայութիւնը պարտաւորիչ է:

ԱԼՖՈՐՎԻԼ.— Հ. Յ. Դ. Սարգիս Մինասեան ենթակոմիտէի ժողովը այս Ուրբաթ, ժամը 21ին, սովորական հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ:

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Աղբիւր–Սերոբ Եօթնեղբայրեան խումբի ընկեր. ընդհ. ժողովը այս Շաբաթ, ժամը 20.30ին, սովորական հաւաքավայրը: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է: Կարեւոր օրակարգ:

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէն հետեւեալ խումբերը ժողովի կը հրաւիրէ.—

Քրիստափոր ենթակոմիտէն 5 Դեկտ. Շաբաթ իրիկուն ժամը 20.30ին:

Հայաստան ենթակոմիտէն 5 Դեկտ., Շաբաթ իրիկուն ժամը 20.30ին:

Մուրատ խումբը 6 Դեկտ. Կիրակի կէսօրէ ետք ժամը 15ին:

Արամ խումբը 6 Դեկտ. Կիրակի առտու, ժամը 10ին:

Թաքւոր խումբը 6 Դեկտ. Կիրակի առտու ժամը 10ին:

Ակնունի ենթակոմիտէն 12 Դեկտ. Շաբաթ իրիկուն ժամը 20.30ին:

Համազասպ ենթակոմիտէն 13 Դեկտ. Կիրակի առտու ժամը 10ին:

Վռամեան ենթակոմիտէն 13 Դեկտ. Կիրակի կէսօրէ ետք ժամը 15ին:

Զաւարեան ենթակոմիտէն 19 Դեկտ. Շաբաթ իրիկուն ժամը 20.30ին:

Ընկ. Կարօ խումբը 20 Դեկտ. Կիրակի կէսօրէ ետք ժամը 15ին:

## ՄԱՐՍԷՅԼԻ ՀԱՅԵՐՈՒՆ

Պատրաստուեցէք Ամասիոյ Երիտասարդացի տարեկան մեծ պարահանդէսին:

Դեկտեմբեր 12, Շաբաթ գիշեր մինչեւ լոյս, Ալհամպրայի շքեղ սրահներուն մէջ, 340 Պուլվ. Շավ:

Այրի Տիկին Գլանչ Զայլաք ցաւով կը ծանուցանէ իր ամուսնոյն՝

ՄԿՐՏԻՉ ԶԱՅԼԱՔԻ

(Իրաւագէտ – փաստաբան)

կսկծալի մահը որ տեղի ունեցաւ յետ կարճատեւ հիւանդութեան, Դեկտեմբեր երկուքին:

Յուղարկաւորութիւնը այսօր՝ Շաբաթ ժամը 16·15ին, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ :

Մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբրեւ այդ նկատել :

## Հ.Յ.Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ «ԱՀԱՐՈՆԵԱՆ» ԽՈՒՄԲԻ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Դեկտեմբեր 13ին, Կիրակի կէսօրէ ետք ժամը 16էն մինչեւ կէս գիշեր, Պրասըրի Զիմմերի գետնայարկը, 1, Փլաս տիւ Շաթլէ, Մէթօր Շաթլէ :

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Լաւ մեքենագրող երիտասարդ օրիորդ մը: Ներկայանալ «Յառաջ»ին :

## ՊԱՏԱՐԱԳ

Այս Կիրակի, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ պիտի պատարագէ եւ քարոզէ, Կ. Պոլսոյ դպրեվանքի տեսուչ Գարեգին Ծ. Վրդ. Գազանճեան : Կը հրաւիրուի հայ հասարակութիւնը :

## ՀԱՅԱԾԷՍ ՀԱՆԴԻՍԱՒՈՐ Ս. ՊԱՏԱՐԱԳ ՎԱՏԻԿԱՆԻ ՁԱՅՆԱՍՓԻՒՌԷՆ

Այս Կիրակի, ժամը 10·30ին, կէս օրէ առաջ, բազմաձայն երգեցողութեամբ հայկական Ս. պատարագ եւ քարոզ պիտի ձայնասփռուի Վատիկանէն:

Միջին ալիք՝ 196 մ., կարճ ալիք՝ 19·84, 25·67, 31·10:

## ՀԱՅ ԹԱՏՐՈՆ

21, Rue Yves Toudic (Métro République)

THEATRE PAUL FARALICQ

Երկուշաբթի գիշեր 21 Դեկտեմբեր ժամը ճիշդ 20·45ին

Հովանաւորութեամբ Հայ պեղարուեստի բարեկամ՝

ԳէՈՐԳ ՊԱՔԸՐՃԵԱՆԻ

Դերասան ԳէՈՐԳ ՏԷՐՎԻՇԵԱՆ կը ներկայացնէ

## ՉԱՐՇԸԼԸ ԱՐԹԻՆ ԱՂԱ

Կատակերգութիւն 3 արար, Ե. Օտեան – ցի եւ Կիւրճեանի :

Մասնակցութեամբ Փարիզահայ բեմի լաւագոյն արուեստագէտներուն՝

Տիկին Ս. Նշանեան, Օր. Կորկոտեան, Պ. Պ. Տրդատ Նշանեան, Արտաշէս Գըմ-բէթեան, Գ. Վահան, Ն. Մարգարեան, Ն. Պշտիկեան, Ստէփանօ, Օն. Սարաֆ – եան, Ժ. Քիպիրեան, ինչպէս նաեւ երեկոյթը հովանաւորող Գէորգ Պաքըրճեան:

Մուտքի գիները սովորական :

Տոմսերը կը ծախուին միմիայն գրա – տուն Հրանդ Բալուեան: 43, Րիւ Ռիշէ :

## ԾԱԽՈՒ Է

Գարաժ տուն մը, Շաւիլ, մահուան պատճառով, մատչելի պայմաններ, հինգ սենեակ, խոհանոց, մառան, կեդրոնա – կան ջերմութիւն, Շուկէս միլիոն կան – խիկ, 2·4 ապառիկ:

Դիմեցէք Հայկ. ածանցին Պ.Մառթէն.— Հեռաձայն 926–66–15 :

## ԾԱԽՈՒ Է

Գեղեցիկ յարկաբաժին մը, չորս սեն – եակ, լոծիա, մառան, երրորդ յարկ, Նոր շէնքի մէջ, ամէն յարմարութիւն, սթան-տինկ 15րդ թաղամաս, հանդարտ (ռեզիտանսիէլ):

Գրել «Յառաջ»ին, որ կը փոխանցէ :

## ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ԱՒԵՏԱՐԱՆ. ԵԿԵՂԵՑԻ

8 bis, Rue des Ternes

Մեթրօ Փորթ Մայօ

Պաշտամունք այսկիրակի առաւօտ ժամը 10·45ին:

## ՀԱՅ ԱՒԵՏԱՐԱՆԱԿԱՆ ՄԿՐՏՉ. ԵԿԵՂԵՑԻ ՄԱՐՍԷՅԼ

Պաշտամունք՝ այս կիրակի, Սէն Ժէ – րոմ, ժամը 9,30ին: Ռիւ Ժէմափ՝ ժամը 10,45ին:

Կը քարոզէ Վերապատուելի Հելվաճեան :

Imprimerie Spéciale du Journal « Haratch »

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՎԻԷՆ.— Հ. Յ. Դ. Անի կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները, այս Շաբաթ ժամը 20·30ին, Ակումբին մէջ: Բոլոր ընկերու ներկայութիւնը պարտաւորիչ է :

ՓԱՐԻԶ.—Հ.Յ.Դ. Ազրիէլ–Սերոբ Եօթ – նեղբայրեան խումբի ընկեր. ընդհ. ժո – ղովը այս Շաբաթ, ժամը 20·30ին, սովորական հաւաքավայրը:Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է : Կարեւոր օրակարգ :

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէն հետեւեալ խումբերը ժողովի կը հրաւի – րէ.—

Քրիստափոր ենթակոմիտէն 5 Դեկտ. Շաբաթ իրիկուն ժամը 20·30ին:

Հայաստան ենթակոմիտէն 5 Դեկտ., Շաբաթ իրիկուն ժամը 20·30ին :

Մուրատ խումբը 6 Դեկտ. Կիրակի կէսօրէ ետք ժամը 15ին:

Արամ խումբը 6 Դեկտ. Կիրակի առ – տու, ժամը 10ին:

Թաթուլ խումբը 6 Դեկտ. Կիրակի առտու ժամը 10ին:

Ակնունի ենթակոմիտէն 12 Դեկտ. Շաբաթ իրիկուն ժամը 20·30ին:

Համազասպ ենթակոմիտէն 13 Դեկտ. Կիրակի առտու ժամը 10ին:

Վռամեան ենթակոմիտէն 13 Դեկտ. Կիրակի կէսօրէ ետք ժամը 15ին:

Զաւարեան ենթակոմիտէն 19 Դեկտ. Շաբաթ իրիկուն ժամը 20·30ին :

### ՓՈԽԱՆ ՀՈԳԵՀԱՆԳՍՏԻ

Այրի Տիկ. Եռանդիկ Անտոնեան (Վիլըժուիֆ) կը նուիրէ երկու հազար ֆրանք Հայ Կարմիր Խաչի անտէր հիւանդներու ֆոնտին, փոխան հոգեհանգստի, իր ամուսնոյն՝ ողբացեալ Վահրամ Անտոն – եանի մահուան 10րդ տարեդարձին առ – թիւ:



### ՄԱՄՈՒԼԻ ՏԱԿ Է

## ՄԵՂՈՒԻՆ ՃԱՌԸ

Գրեց՝ ՇԱՒԱՐՇ ՆԱՐԴՈՒՆԻ

Գինը 200 ֆրանք

Դիմել Յառաջի խմբագրութեան :

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

, Գոմոնի Կ. Խաչի մասնաճիւղի վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է Պ. Պ. Մկրտիչ Խազնաճեանէ եւ Վրոյր Շալճեանէ հազարական ֆրանք Գոմոնի դըպրոցին համար ողբացեալ Անդրանիկ Ներսէսեանի թաղման առթիւ, փոխան ծաղկեպսակի :

Նոյնպէս Պ Յարութիւն Գարաքէեանի մահուան քառասունքին առթիւ ստացած է Պ. Պ. Գարիս Մուսայէլեանէ եւ Արմենակ Թորոսեանէ հազարական ֆրանք դպրոցին :

Տիկին Մարիամ Ներսէսեանի տխուր մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի՝ Պ. Կղմէս Պետրոսեանէ հազար ֆրանք, դպրոցին եւ հազար ֆրանք Կապ. Խաչին, Պ. Ասատուր Արսլանեանէ հինգ հարիւր ֆրանք նոյն առթիւ :

### Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴ

## ՊԱՐԱՆՑԻԿ ՑԵՐԵԿՈՅԹ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Նոր Սե – րունդի Անիէռ – Գոււս Քոլոմպի Սօսէ – Սերոբ խումբին կողմէ, Կիրակի Դեկ – տեմբեր 6, ժամը 15ին, Քլաշէթի սրահը, 149պիս, Ավընիւ տ'Արժանթէօյ :

Ճոխ յայտագիր :

Կը հրաւիրուին ծնողքները :

Մուտքը ազատ է :

## — ՅՈՒՇԱՏԵՏՐ —

Ֆ. Կ. ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղին ընդհ. ժողովը՝ այս Շաբաթ, կէսօրէ ետք ժամը չորսին Քաֆէ Ռեժանի մէջ : Օրակարգ — Ա) Գարահանդէս եւ յանձնախումբերու ընտրութիւն; Բ) Դպրոցական հարց: Բոլոր ընկերուհիներու ներկայութիւնը անհրաժեշտ է :

ՀԱՄԱԽԱՐԲ. Հայր. Միութեան ընդհ. անդամական ժողովը այս Կիրակի առաւօտ, ժամը 9ին, 7 Պուլվ. տ'Աթէն, Պար տիւ Կլոպի սրահը : Օրակարգ տեղւոյն վրայ: Վարչութիւնս կը փափաքի որ բոլոր անդամները ներկայ ըլլան այս կարեւոր ժողովին :

Օրիորդ Յասմիկ Վաճառականեան, Տէր եւ Տիկին Ն. Վաճառականեան եւ զաւակները (Լիէժ), Օր. Աստղիկ Առաքելեան, Գ. Յակոբ Առաքելեան, Ալիքսանեան եւ Խաչմանեան ընտանիքները ցաւով կը ծանուցանեն իրենց մօր, մեծ մօր, հօրաքրոջ եւ ազգականին՝

Այրի Տիկ. ԹԱԳՈՒՀԻ ՎԱՃԱՌԱԿԱՆԵԱՆԻ
(Ծնեալ Առաքելեան)

կսկծալի մահը, որ տեղի ունեցաւ Դեկտ. 1ին, 76 տարեկանին, իր բնակարանը, 18 Րիւ Քլավէլ, Փարիզ:

Թաղումը կատարուեցաւ Փանթէն–Փարիզէնի գերեզմանատունը, ընտանեկան մտերիմ շրջանակի մէջ:

ՅԱՌԱՋ.— Մեր ցաւակցութիւնը Օր. Աստղիկ Առաքելեանին և ողբացեալին ընտանիքին:

ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ ԵՒ ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ՄԱՐՍԷՅԼ.— Կապ. Խաչի Գուլվ. Օտոյի մասնաճիւղի վարչութիւնս, իր ցաւակցութիւնները կը յայտնէ ընկերուհի Արմենուհի Քէնտիրեանի, իր զաւակներուն, նոյնպէս իր եղբօր Տէր եւ Տիկին Գրիգոր Քէնտիրեանին եւ զաւակներուն, եւ պարագաներուն, իրենց սիրեցեալ ամուսնոյն, հօր, եղբօր եւ ազգականին, ողբացեալ՝

ՈՍԿԱՆ ՔԷՆՏԻՐԵԱՆԻ

մահուան առթիւ: Այս առթիւ Կապոյտ Խաչը փոխան ծաղկեպսակի կը նուիրէ երկու հազար ֆրանք Մշակոյթի Տան, 1000 ֆր. Մուրատ Ռաֆայէլեան ուսումնասիրացին:

Այս առթիւ շնորհակալութեամբ ստացած ք հետեւեալ նուէրները.— Գ. Գ. Երուանդ Զարգարեան, հինգ հազար ֆրանք Համբարձում Քազեան, հազար ֆր. Ղեւոնդ Կուլեան, Ղազար Կուլեան հինգ հարիւր ֆրանք: Մասնաճիւղիս վարչութիւնը իր ցաւակցութիւնը կը յայտնէ Գ. Յովհաննէս Թէճիրեանի մահուան տխուր առթիւ, ողբացեալին կնոջ՝ Նազիկ Թէճիրեանի եւ զաւակներուն, իր եղբայրներուն Տէր եւ Տիկին Ոսկան Թէճիրեանի, Տէր եւ Տիկին Արսէն Թէճիրեանի եւ բոլոր ազգականներուն եւ այս առթիւ փոխան ծաղկեպսակի ստացած է Տէր եւ Տիկին Ոսկան Քէնտիրեանէ հազար ֆրանք:

ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. կոմիտէն իր ցաւակցութիւնները կը յայտնէ ընկեր Գեւորգեանին եւ ընտանեկան պարագաներուն իր զոքանչ մօր Այրի Տիկին Մարիամ Ներսէսեանի, ինչպէս նաեւ աներձագին, Գ. Անդրանիկ Ներսէսեանի մահուան առթիւ:

×

Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. կոմիտէն իր ցաւակցութիւնները կը յայտնէ ընկեր Գ. Քէնտիրեանին եւ իր ընտանեկան բոլոր պարագաներուն Ոսկան Քէնտիրեանի մահուան առթիւ:

×

Գոմոնի Հ. Յ. Դ. «Զաւարեան» ենթակոմիտէի վարչութիւնը, յանուն իր կազմի բոլոր ընկերներուն, խորին ցաւակցութիւն կը յայտնէ Տէր եւ Տիկին ընկեր Գրիգոր Քէնտիրեանի եւ բոլոր ընտանեկան պարագաներուն, ընկեր Ոսկան Քէնտիրեանի անակնկալ մահուան առթիւ:

Հ.Յ.Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ «ԱՀԱՐՈՆԵԱՆ» ԽՈՒՄԲԻ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Դեկտեմբեր 13ին, Կիրակի կէսօրէ ետք ժամը 16էն մինչեւ կէս գիշեր, Պրասըրի Զիմմեռի գետնայարկը, 1, Փլաս տիւ Շաթլէ, Մէթօր Շաթլէ:

ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ Կ'ԵՐԳԵՆ
(ՍՈՐՊՈՆԻ ՄԷՋ)

ՄԱՐՏ 13 ԻՆ

ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Լաւ մեքենագրող երիտասարդ օրիորդ մը: Ներկայանալ «Յառաջ»ին:

ԾԱԽՈՒ Է

Գարաժ տուն մը, Շաւիլ, մահուան պատճառով, մատչելի պայմաններ, հինգ սենեակ, խոհանոց, մառան, կեդրոնական ջերմութիւն, 2ուկէս միլիոն կանխիկ, 2-4 պարտէզ:
Դիմեցէք Հայկ. ամանսին Գ. Մառքէն.— Հեռաձայն 926-66-15:

Imprimerie Spéciale du Journal « Haratch »



ՄԱՄՈՒԼԻ ՏԱԿ Է

ՄԵՂՈՒԻՆ ՃԱՌԸ

Գրեց՝ ՇԱՒԱՐՇ ՆԱՐԴՈՒՆԻ

Գինը 200 ֆրանք

Դիմել Յառաջի խմբագրութեան:

ԼԵՒՈՆ ՄՕԶԵԱՆԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ

Ֆրանսահայ Լսարանը եւ Հայ Գրողներու Միութիւնը կը հրաւիրեն հասարակութիւնը այս Չորեքշաբթի իրիկուն ժամը 21ին, Քառէի սրճարանին վերնայարկը, ուր յարգանքի երեկոյ մը տեղի պիտի ունենայ ողբացեալ՝

ԼԵՒՈՆ ՄՕԶԵԱՆԻ

մահուան առաջին տարելիցին առթիւ:

Այդ օրը հրապարակ կ'ելլէ ողբացեալին մէկ անտիպ գործը:

Հ. Յ. Դ.

ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէն հետեւեալ խումբերը ժողովի կը հրաւիրէ.—

Ակնունի ենթակոմիտէն 12 Դեկտ. Շաբաթ իրիկուն ժամը 20.30ին:

Համազասպ ենթակոմիտէն 13 Դեկտ. Կիրակի առտու ժամը 10ին:

Վռամեան ենթակոմիտէն 13 Դեկտ. Կիրակի կէսօրէ ետք ժամը 15ին:

Զաւարեան ենթակոմիտէն 19 Դեկտ. Շաբաթ իրիկուն ժամը 20.30ին:

Շ. ՄԻՍԱՔԵԱՆ խումբը Շաբաթ (19 Դեկտեմբեր) իրիկուն ժամը 20.30ին:

Ընկ. Կարօ խումբը 20 Դեկտ. Կիրակի կէսօրէ ետք ժամը 15ին:

## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

ՀԻՆ ՏԱՐՈՒԱՆ ՀԵՏ
ՓԱԿԵՑԷՔ
ՁԵՐ ՀԻՆ ՀԱՇԻՒՆԵՐԸ

**Նոր Տարի**
**Նոր Ցրանք**
**Նոր Բաժանորդին**

Շնորհակալութեամբ.
ՎԱՐՉՈՒԹԻՒՆ «ՅԱՌԱՋ»Ի

*Այրի Տիկին Վահրամ Կազմարարեան եւ աղջիկը՝ Սեդա, Այրի Տիկին Եաղուպեան (Պոլիս), Այրի Տիկին Ժիրայր Կազմարարեան (Երեւան), Տէր եւ Տիկին Իշխանեան, Կոճիկեան, Գույումճեան եւ Պաղտիկեան ընտանիքները ցաւով կը ծանուցանեն իրենց ամուսնոյն, հօր, եղբօր, փեսային եւ ազգականին՝*

ՎԱՀՐԱՄ ԿԱԶՄԱՐԱՐԵԱՆԻ

*կսկծալի մահը, որ տեղի ունեցաւ Դեկտեմբեր մէկին:*

*Յուղարկաւորութիւնը կը կատարուի այս Երեքշաբթի (Դեկտեմբեր 8) կէսօրէ ետք, ժամը 14·15ին Փարիզի Ս. Յովհաննէս – Մկրտիչ եկեղեցւոյ մէջ:*

Մասնաւոր մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել:

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ
### ԳԵՐԱՍԻՄ ԲԱԼԱՅԵԱՆ ՍՐԱՀԻՆ

| | |
|---|---|
| Հ. Յ. Դ. Կրընոպլի կոմիտէն | 5·000 |
| Մարսէյլի Շրջ. կոմիտէ | 25·000 |
| Արամ Սողոմոնեանց | 5·000 |
| Ընկերուհի Ժ. Չպուքեան | 5·000 |
| *Նախորդ գումար* | 439·500 |
| *Ընդհ. գումար* | 479·500 |

### ՆՈՒԷՐՆԵՐ

*Տէր եւ Տիկին Կ. Գարոյեան երկու հազար ֆրանք կը նուիրեն Ֆ. Կապ. Խաչի Փարիզի մասնաճիւղին, փոխան ծաղկեպսակի ողբացեալ* Սարգիս Տէօքմէճեանի *մահուան առթիւ:*

*Կապոյտ Խաչի Փարիզի մասնաճիւղը շնորհակալութեամբ ստացած է նաեւ Տիկին Տըպրէէ 2500 ֆրանք:*

*Օր. Անահիտ Ակոնայեան իր աշխատանքի առաջին վարձատրութենէն բաժին կը հանէ երեք հազարական ֆրանք Կապոյտ եւ Կարմիր Խաչերուն:*

×

*Տիկին Եղիսաբէթ Տէր Ղուկասեան իր անթաղ (1915) ծնողքին յիշատակին հազար ֆրանք կը նուիրէ Ֆ. Կ. Խաչի Անկէնի մասնաճիւղին:*

### ՆՈՒԷՐ

*Իսիի Ֆրիմեան դպրոցի հոգաբարձութիւնը շնորհակալութեամբ ստացաւ հետեւեալ նուէրները, Օր. Նուարդ Փէհլիվանեանի եւ Պ. Կղմէս (Ժօժօ) Տէր Թումանեանի ամուսնութեան առթիւ կնքահայր՝ Պ. Անտրէ Մանիցեանէ, կնքամայր Տիկին Վարդենի Մանիցեանէ, Պ. Յակոբ Տէր Թումանեանէ հազարական ֆրանք, նպարավաճառ՝ Տէր եւ Տիկին Մկրտիչ Զարիկեանէ հինգ հազար ֆր.:*

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

*Ֆ. Կապ. Խաչի Կեդր. վարչութիւնը իր անկեղծ ցաւակցութիւնները կը յայտնէ Տէր եւ Տիկին Պետրոս Չպուքճեանի, իրենց հօր* Գրիգոր Աշճեանի *մահուան տխուր առթիւ (Պէյրութ):*

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

*Վիէնի Կ. Խաչի պարահանդէսը Յունուար 9ին: Մանրամասնութիւնները յաջորդով.*

×

3 Յունուար 1960, *Կիրակի ժամը 4–24, Ֆ. Կապոյտ Խաչի Փարիզի մասնաճիւղի տարեկան պարահանդէսը, Օթէլ Լիւթէսիայի մէջ:*

7 Յունուար 1960, *Կապոյտ Խաչի Կեդր. վարչութիւնը Փարիզի շրջանի տասը մասնաճիւղերով կը տօնէ «Մանուկներու Օրը», Փըլթի ժուռնալի մեծ սրահին մէջ:*

### ՄԱՄՈՒԼԻ ՏԱԿ Է

## ՄԵՂՈՒԻՆ ՃԱՌԸ
Գրեց՝ ՇԱՒԱՐՇ ՆԱՐԴՈՒՆԻ
Գինը 200 ֆրանք

*Դիմել Յառաջի խմբագրութեան:*

## Հ. Յ. Դ.
### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

*ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Կեդր. վարչութեան, Հ. Յ. Դ. «Թուլբէն» Ուսանողական Միութեան եւ Հ. Յ. Դ. «Փոթորիկ» խումբի խառն ժողովը տեղի կ'ունենայ այս Հինգշաբթի ժամը 9ին, սովորական հաւաքատեղին:*

*ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէն հետեւեալ խումբերը ժողովի կը հրաւիրէ.—*

Ակնունի *ենթակոմիտէն 12 Դեկտ. Շաբաթ իրիկուն ժամը 20·30ին:*

Համազասպ *ենթակոմիտէն 13 Դեկտ. Կիրակի առտու ժամը 10ին:*

Վռամեան *ենթակոմիտէն 13 Դեկտ. Կիրակի կէսօրէ ետք ժամը 15ին:*

Զաւարեան *ենթակոմիտէն 19 Դեկտ. Շաբաթ իրիկուն ժամը 20·30ին:*

Շ. Միսաքեան *խումբը Շաբաթ (19 Դեկտեմբեր) իրիկուն ժամը 20·30ին:*

Ընկ. Կարօ *խումբը 20 Դեկտ. Կիրակի կէսօրէ ետք ժամը 15ին:*

### ԼԵՒՈՆ ՄՕԶԵԱՆԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ

*Ֆրանսահայ Լսարանը եւ Հայ Գրողներու Միութիւնը կը հրաւիրեն հասարակութիւնը այս Չորեքշաբթի իրիկուն ժամը 21ին, Գասէի սրճարանին վերնայարկը, ուր յարգանքի երեկոյ մը տեղի պիտի ունենայ ողբացեալ՝*

ԼԵՒՈՆ ՄՕԶԵԱՆԻ

*մահուան առաջին տարելիցին առթիւ:*

*Այդ օրը հրապարակ կ'ելլէ ողբացեալին մէկ անտիպ գործը:*

## —ՑՈՒՇԱՏԵՏՐ—

*ՎԻԷՆ.— Կապ. Խաչի վարչութիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերուհիները անխտիր, այս Կիրակի կէսօրէ ետք ժամը երեքին, Համօ Օհանջանեան ակումբին մէջ: Շատ կարեւոր օրակարգ:*

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Այրի Տիկին Մ. Զայլաք, Այրի Տիկին Արշակուհի Եավէր (Մարսէյլ), Այրի Տիկ. Շամիրամ Տիարեան (Պոլիս), Այրի Տիկին Նէվրուհի Արսլան եւ զաւակները (Պոլիս), Տէր եւ Տիկին Յ. Թորիկեան եւ զաւակները (Նիւ Եորք), Տէր եւ Տիկին Միքայէլ Եավէր (Մարսէյլ), Օր. Մատըլէն Եավէր (Մարսէյլ), Տէր եւ Տիկին Յարութիւն Տիարեան, Տէր եւ Տիկին Բարսեղ Տիարեան (Անգարա), Տէր եւ Տիկին Ֆլօրի, Տէր եւ Տիկին Սթէֆան Տիւրան շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ, գրաւոր ցաւակցութիւն յայտնեցին իրենց ամուսնոյն, եղբօր եւ ազգականին՝ Մ. Զայլաքի մահուան առթիւ:*

### ԴՊՐՈՑԱՍԷՐ

*Կիւլպէնկեան Հիմնարկութիւնը, որ բատանձնած է հոգը սանուհիներու պաշտպանութիւնը Դպրոցասէր Տիկնանց վարժարանին մէջ, ամբողջութեամբ ղրկած է անոնց 1959 – 1960 շրջանի տարեթոշակը, 1·120·000 ֆրանք:*

*Խնամակալութիւնս կը յայտնէ իր սրտագին շնորհակալութիւնները:*

*ՀԱՅ ԿԱՐՄԻՐ ԽԱՉԻ Ֆէսանժիլիէի օժանդակ խորհրդութեան կայանին կը նուիրեն.— Տէր եւ Տիկին Քէլէսեան եւ Տէր եւ Տիկին Քէլէշեան (իսի լէ Մուլինօ) հազարական ֆրանք, Տէր եւ Տիկին Ղուկասեան հազար ֆրանք, Տէր եւ Տիկին Երկանեան, Տիկին Չօլաքեան, Պ. Գէրկօսեան եւ Պ. Փէհլիվանեան 500ական ֆրանք:*

Imprimerie Spéciale du Journal « Haratch »



## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ
### ԾՆՈՒՆԴԻ ՏՕՆԱԾԱՌ
ԿԻՐԱԿԻ, 20 ԴԵԿՏԵՄԲԵՐ

Վարժարանի Ծնողաց Միութեան *կազմակերպած Ծնունդի ծառի հանդէսը կը կատարուի դպրոցի սրահին մէջ՝ ժամը 15էն 22:*

*Գեղարուեստական մշակուած բաժին, ներկայացումներ, մրցումներ, արտասանութիւններ, երգեր աշակերտներու կողմէ:*

*Աւանդական վիճակահանութիւն՝ հարիւրաւոր թանկարժէք առարկաներով:*

*Ծոփ սեղան, հայկական եւ եւրոպական համադամ կերակուրներով:*

Սիրով կը հրաւիրուի հայ հասարակութիւնը:

*Հ.Յ.Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ «ԱՀԱՐՈՆԵԱՆ» ԽՈՒՄԲԻ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ*

*Դեկտեմբեր 13ին, Կիրակի կէսօրէ ետք ժամը 16էն մինչեւ կէս գիշեր,* Պրասըրի Ձիմմեռի *գետնայարկը,* 1, Փլաս տիւ Շաթլէ, Մէթռօ Շաթլէ:

*ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ*

ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԸ Կ'ԵՐԳԵՆ
(ՍՈՐՊՈՆԻ ՄԷՋ)

## ՄԱՐՏ 13 ԻՆ

*ԱՃՈՒՐԴՈՎ ԿԸ ԾԱԽՈՒԻ*

*(Մանրամասնութիւնները՝ տես Յառաջ Դեկտեմբեր 5):*

*Ա.— Վաճառելի տունը կը գտնուի* Ալֆոնս Մուր, *Պուլվարի անկիւնը:*

*Բ.— Աճուրդը տեղի պիտի ունենայ նոտարներու սենեակը 36* Րիւ Փառատի:

*ԿԸ ՓՆՏՌՈՒԻ*

*Լաւ մեքենագրող երիտասարդ օրիորդ մը: Ներկայանալ «Յառաջ»ին:*

### ԿԱՐԵՒՈՐ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Փարիզի եւ շրջականներու Հայց. Առաքելական Եկեղեցւոյ Կրօն. Ընկերակցութեան Ներկայացուցչական Ժողովի 24անդամներու ընտրութիւնը տեղի պիտի ունենայ Դեկտ. 20ին :

Ձորս եկեղեցիներուն մէջ.— Փարիզ, Ալֆորվիլ, Արնուվիլ, Շավիլ — պիտի դրուին կնքուած տուփեր. Ամէն քուէարկող կրնայ ներկայանալ իր անդամավճարին ստացականով եւ ինքնութեան թուղթով եւ անձամբ քուէարկել ժամը 10–18:

Ամէն անոնք որոնք անձամբ քուէարկելու կարելիութիւն չունին կրնան փոսթով եւ ապահովագրուած ծրարով ղրկել Եւրոպայի Հայրապետական Պատուիրակ Գերշ. Տէր Սերովբէ Եպիսկ. Մանուկեանի հասցէին :

Այս աշխատանքը դիւրացնելու համար արդէն քուէարկողները պիտի ստանան պահարաններ որոնցմէ մին վերապահուած է քուէաթուղթին եւ այդ պահարանին վրայ ոչ մէկ բան պիտի գրուի, երկրորդ պահարանը որուն մէջ վերոյիշեալ պահարանը պիտի դրուի, քուէարկողը պէտք է գրէ իր անունը եւ հասցէն :

Ամէն քուէարկող կրնայ իր քուէն ղրկել անմիջապէս որ պէտք եղած թուղթերը ստանայ եւ ամէնէն ուշը 19 Դեկտ. 1959:

ԴԻՒԱՆ

### ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Լեւոն Մօզեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս Կիրակի առաւօտ յետ պատարագի Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, իրենց ամուսնոյն եւ հօր՝

ԼԵՒՈՆ ՄՕԶԵԱՆԻ

մահուան տարելիցին առթիւ :

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները :

×

Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյն մէջ տեղի պիտի ունենայ եկեղեցւոյ բարերար Ա. Համբարձումեանի գերդաստանի յիշատակին հոգեհանգստեան պաշտօն, այս Կիրակի օր :

Կը հրաւիրուին բարեկամները եւ պարագաները յարգելու անոնց յիշատակը :

×

Ալֆորվիլի Հայ Մարզականը իր վաղամեռիկ ընկերոջ մարզիկ Րոժէ Նէրայի մահուան քառասունքին առթիւ հոգեհանգստեան պաշտօն կատարել կուտայ այս Կիրակի Ս. Պօղոս Պետրոս եկեղեցւոյ մէջ:

Կը հրաւիրուի բոլոր մարզիկները եւ ողբացեալ ընկերոջ յիշատակը յարգողները :

×

Այրի Տիկին Մարիամ Համբարեան եւ զաւակները, Յովակիմ Համբարեան, Այրի Տիկին Մարիամ Կրկզեան եւ զաւակը, Այրի Տիկին Նարդուհի Տէմիրեան, Յակոբ Համբարեան, ինչպէս նաեւ բոլոր ազգականները կը ծանուցանեն թէ յառաջիկայ Կիրակի, 13 Դեկտեմբեր, յետ պատարագի հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, ի յիշատակ իրենց ամուսնոյն, հօր, եղբօր, հօրեղբօր եւ ազգականին

ՀԱՄԲԱՐՁՈՒՄ ՀԱՄԲԱՐԵԱՆԻ

(Սէօլէօզցի)

մահուան քառասունքին առթիւ :

Կը հրաւիրուին իր յիշատակը յարգողները:

×

ԱԼՖՈՐՎԻԼ.— Այրի Տիկին Մարգրիտ Մելքոնեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ այս Կիրակի հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Ալֆորվիլի Ս. Պօղոս Պետրոս եկեղեցին, տարաբախտ Արմենակ – Յովակիմ Մելքոնեանի մահուան քառասունքին առթիւ :

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները :

### ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Մարսէյլի Պուլվար Օտտոյի Ս. Յակոբ Եկեղեցւոյ Կրօն. Ընկերութիւնս կը յայտարարէ թէ այս Կիրակի օր եկեղեցւոյս անուան տօնակատարութեան առթիւ պիտի կատարուի հանդիսաւոր Ս. պատարագ եւ աւանդական մատաղօրհնութիւն եւ մատաղի բաշխում Կ. Յաջուհիներու կողմէ :

Մասնաւոր հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի թաղիս եկեղեցաշէն ու դպրոցաշէն ազգայիններու եւ համայն թաղիս հին եւ նոր ննջեցելոց հոգւոյն :

### Հ.Յ.Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ «ԱՇԽԱՐՈՒՆԵԱՆ» ԽՈՒՄԲԻ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Դեկտեմբեր 13ին, Կիրակի կէսօրէ ետք ժամը 16էն մինչեւ կէս գիշեր, Պրասըրի Զիմմեռի գետնայարկը, 1, Փլաս տիւ Շաթլէ, Մէթօր Շաթլէ :

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՓԱՐԻԶ.—Հ. Յ.Դ. Պէլվիլի «Թոտոմ» խումբի ժողովը այս Շաբաթ, ժամը 21–ին, Փլաս տէ Ֆէթի սովորական վայրը : Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է :

ԻՍԻ.— Հ. Յ. Դ. Զաւարեան կոմիտէի ժողովը այս Շաբաթ, ժամը 21ին, սովորական հաւաքատեղին :

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէն հետեւեալ խումբերը ժողովի կը հրաւիրէ.—

Ակնունի ենթակոմիտէն 12 Դեկտ. Շաբաթ իրիկուն ժամը 20·30ին:

Համազասպ ենթակոմիտէն 13 Դեկտ. Կիրակի առտու ժամը 10ին:

Վռամեան ենթակոմիտէն 13 Դեկտ. Կիրակի կէսօրէ ետք ժամը 15ին:

Զաւարեան ենթակոմիտէն 19 Դեկտ. Շաբաթ իրիկուն ժամը 20·30ին :

Ն. Միսաքեան խումբը Շաբաթ (19 Դեկտեմբեր) իրիկուն ժամը 20·30ին:

Ընկ. Կարօ խումբը 20 Դեկտ. Կիրակի կէսօրէ ետք ժամը 15ին:

ՇԱՒԻԼԻ եկեղեցւոյ օծման Բ. տարեդարձը կը տօնուի յառաջիկայ Կիրակի 20 Դեկտեմբեր. Մանրամասնութիւնները յաջորդով :

## ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

### ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Կազմակերպուած Ամասիոյ Հայր. Միութեան երկսեռ երիտասարդաց կողմէ :

Ի նպաստ իր պատմագրքի հրատարակութեան :

Այս Շաբաթ գիշեր մինչեւ լոյս, Ալհամպրայի շքեղ սրահներուն մէջ, Պուլվար Շավ, 340 :

Պիտի նուագէ ՁԻԿԱՆՆԵՐՈՒ նշանաւոր հնգեակը :

**Orchestre Roger Frolens**

եւ իր ծանօթ երգիչը՝ ՄԱՐԻՕ ՍԱՆՁԷՋ

## —ՑՈՒՑԱՏԵՏՐ—

ՎԻԷՆ.— Կապ. Խաչի վարչութիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերուհիները անխտիր, այս Կիրակի կէսօրէ ետք ժամը երեքին, Համօ Օհանջանեան ակումբին մէջ: Շատ կարեւոր օրակարգ:

ԿԱՊ. ԽԱՉԻ Կրընոպլի Թէյասեզան ընդհ. ժողովը, Դեկտեմբեր 15ի Կիրակին, կէսօրէ ետք ժամը երեքին, դպրոցին սրահը: Կարեւոր օրակարգ: Կը խնդրուի ընկերուհիներէն ըլլալ ճշդապահ :

ԿԱՊ. ԽԱՉԻ Կեդր. Վարչութիւնը միջմասնաճիւղային ժողովի կը հրաւիրէ Փարիզի շրջանի իր տասը մասնաճիւղերը, այս Շաբաթ կէսօրէ վերջ ժամը 4ին, Ռէժանի վերնայարկը, մէթրօ Քատէ : Կը խնդրուի բաղմանդամ ներկայ գտնուիլ :

ԿԱՊ ԽԱՉԻ Անիէռի մասնաճիւղին ժողովը այս Ուրբաթ կէս օրէ ետք ժամը 16ին, Տիկին Աւետիսեանի բնակարանը :





### ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

### ԾՆՈՒՆԴԻ ՏՕՆԱԾԱՌ

ԿԻՐԱԿԻ, 20 ԴԵԿՏԵՄԲԵՐ

Վարժարանի Ծնողաց Միութեան կազմակերպած Ծնունդի ծառի հանդէսը կը կատարուի դպրոցի սրահին մէջ՝ ժամը 15էն 22 :

Գեղարուեստական մշակուած բաժին, ներկայացումներ, մրցումներ, արտասանութիւններ, երգեր աշակերտներու կողմէ :

Աւանդական վիճակահանութիւն՝ հարիւրաւոր թանկարժէք առարկաներով :

Ճոխ սեղան, հայկական եւ եւրոպական համադամ կերակուրներով:

Սիրով կը հրաւիրուի հայ հասարակութիւնը :

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Լաւ մեքենագրող երիտասարդ օրիորդ մը: Ներկայանալ «Յառաջ»ին :

### ՀԻՆԱՒՈՒՐՑ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆՈՐԱԳՈՅՆ ԼՈՒՍԱՆԿԱՐՆԵՐ

Դասախօսութիւն եւ գունաւոր ցուցադրութիւն

Մեկնաբանուած ԵԴՈՒԱՐԴ ԻՒԹԻՒՃԵԱՆԻ կողմէ :

Կառավարական վկայեալ ճարտարապետ, դէպի Հայաստան իր երրորդ ճամբորդութենէն նոր վերադարձած :

Այս Շաբաթ երեկոյեան ժամը 21ին, Սալ Մազընոյի սրահներուն մէջ, 88 Րիւ տ'Օպանեը, Մարսէյլ :

### ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ԱՒԵՏԱՐԱՆ. ԵԿԵՂԵՑԻ

8 bis, Rue des Ternes

Մեթրօ Փորթ Մայօ

Պաշտամունք այսկիրակի առաւօտ ժամը 10·45ին :

### ՀԱՅ ԱՒԵՏԱՐԱՆԱԿԱՆ ՄԿՐՏՉ. ԵԿԵՂԵՑԻ ՄԱՐՍԷՅԼ

Պաշտամունք՝ այս կիրակի, Սէն Ժէրոմ, ժամը 9,30ին: Ուիւ Ժէմափ՝ ժամը 10,45ին:

Կը քարոզէ Վերապատուելի Հելվաճեան :





Imprimerie Spéciale du Journal « Haratch »

## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

ՀԻՆ ՏԱՐՈՒԱՆ ՀԵՏ
ՓԱԿԵՑԷՔ
ՁԵՐ ՀԻՆ ՀԱՇԻՒՆԵՐԸ

Նոր Տարի
Նոր Ճրագ
Նոր Բաժանորդին

Շնորհակալութեամբ.
ՎԱՐՉՈՒԹԻՒՆ «ՅԱՌԱՋ»Ի

## ՎԻՃԱԲԱՆԱԿԱՆ ԱՍՈՒԼԻՍ

Կազմակերպութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Կեդր. վարչութեան, «Թուբէն» Ուս. Միութեան և «Փաթաքիկ» խումբին:

*Նիւթ.—*

*« ՄԱՅՐԵՆԻ ԼԵԶՈՒՆ ԳԱՑՄԱ՞Ն է ԵՐԻՏԱՍԱՐԴ ՍԵՐՈՒՆԴԸ ՀԱՅ ՊԱՀԵԼՈՒ ՀԱՄԱՐ » ։*

*ԹԵՐ կ'արտայայտուի ընկեր Ծ. Փա*լամուտեան :

*ԴԷՄ՝* Ընկեր Կ. Ափրիկեան :

*Կը նախագահէ՝ Ընկ. Հ. ՍԱՄՈՒԷԼ*
Դատական կազմ՝ Ընկ. Կ. ՄԵՀԵԱՆ Ա. ՊԻՊԵՐԵԱՆ, Կ. ՄԱՆԿԵԱՆ :

*Շաբաթ* 19 *Դեկտեմբեր երեկոյեան ժամը ճիշդ* 21*ին, Մշակոյթի Տան մէջ*, (17, Րիւ Պլէօ):

*Մուտքը ազատ է ։*

Սրահին ջերմութիւնը ապահովուած է :

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

*Կրօն. Ընկերակցութեան Վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուիրատուութիւնները, փոխան ծաղկեպսակի : — Ողբացեալ Արամ Աստուրեանի մահուան առիթով* 1000 *Ֆր. Պ.Ց. Պապանիկիտեանէ եւ* 3000 *Ֆր. հանգուցեալին համակիր կօշիկի հայ գործարանատէրերէ (Թիւ տիւ Թերաս) :— Ողբ.Սամուէլ Թոփալեանի մահուան առիթով* 1000 *Ֆր. Գաբրիէլ Ա. Սարկ. Լուսարարեանէ* (1000 *Ֆր. ալ դպրախումբին համար)* , 3000 *Ֆր. Պ. Պ. Միհրան Զավզավաթճեան եւ Որդիներէ* (2000 *Ֆր. ալ դպրախումբին համար)*, 2000 *Ֆր. Պ. Գրիգոր Նաճարեանէ* , 1000 *Ֆր. Պ .Մելքի Պէրպէրեանէ եւ* 2000 *Ֆր. Արամ սարկ. Սանտըգճեանէ ։*

× *Նաեւ* 5000 *Ֆր. Պ. Ֆր. Պ. Գայթանճեանէ եւ* 2000 *Ֆր. Պ. Գլճեանէ, իրենց զաւակներուն՝ Կարպիսի եւ Սիւզանի պըսակադրութեան առիթով ։*

Շ. ՄԻՍԱՔԵԱՆ

# Օրեր եւ Ժամեր

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

*ԿԱՊ. Խաչի Կրընոպլի «Մանուկներու Օրը»,մեծ պատրաստութեամբ կը տօնուի Յունուար 31ին, Րիւ Ժէլի սրահին մէջ ։*

## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ
## ԾՆՈՒՆԴԻ ՏՕՆԱԾԱՌ
ԿԻՐԱԿԻ, 20 ԴԵԿՏԵՄԲԵՐ

Վարժարանի Ծնողաց Միութեան *կազմակերպած Ծնունդի ծառի հանդէսը կը կատարուի դպրոցի սրահին մէջ՝ ժամը* 15*էն* 22 :

*Գեղարուեստական մշակուած բաժին, ներկայացումներ, մրցումներ, արտասանութիւններ, երգեր աշակերտներու կողմէ :*

*Աւանդական վիճակահանութիւն՝ հարիւրաւոր թանկարժէք առարկաներով :*

*Ճոխ սեղան, հայկական եւ եւրոպական համադամ կերակուրներով:*

Սիրով կը հրաւիրուի հայ հասարակութիւնը :

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

*Սարգիս (կամ Սերգօ) Չէր Թովմասեանին (կամ՝ Թովմասեանին): Ծնած* 1914 *Թ., Ղամարլուի շրջանի Չիկդամլու գիւղում:* 1941 *Թ. Նոյեմբերին Ռոստովի առաջին ճակատամարտից յետոյ, անյայտ կորած է :*

*Ով որ լուր ունեցողից (ազգականատում, կամ գերութեան մէջ՝ սպաննուած, մեռած կամ ողջ), կը խնդրուի յայտնել «Յառաջ»ի խմբագրութեան :*

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

*Լաւ մեքենագրող երիտասարդ օրիորդ մը: Ներկայանալ «Յառաջ»ին :*

Imprimerie Spéciale du Journal « Haratch »

### ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐԸ ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

*Կը տօնուի Տօնածառ – հանդէսով՝ Յունուար* 10*ին, կիրակի կէսօրէ ետք, ժամը* 3*ին, Հ. Յ. Դ. Տան մէջ: Նախաձեռնութեամբ Ֆ. Կ. Խաչի Տէսինի մասնաճիւղին եւ մասնակցութեամբ դպրոցին աշակերտութեան :*

*Գեղարուեստական ճոխ յայտագիր :*

*Ներկայացում, արտասանութիւն, արտախօսութիւն, եւ այլ անակնկալներ : Ղեկավարութեամբ ուսուցիչ* Պ. Թրագօշի :

*Կը հրաւիրուի Տէսինահայութիւնը անխտիր:*

*Մուտքը ազատ է :*

### Հ. Յ. Դ.
ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

Զաւարեան *ենթակոմիտէն* 19 *Դեկտ. Շաբաթ իրիկուն ժամը* 20·30*ին :*

Շ. Միսաքեան *խումբը Շաբաթ (* 19 *Դեկտեմբեր) իրիկուն ժամը* 20·30*ին:*

Ընկ. Կարօ *խումբը* 20 *Դեկտ. Կիրակի կէսօրէ ետք ժամը* 15*ին:*

## —ՑՈՒՑԱՏԵՏՐ—

*ԿԱՊ. ԽԱՉԻ Կրընոպլի Թէյասեղանընդհ. ժողովը, Դեկտեմբեր* 15*ի Կիրակին, կէսօրէ ետք ժամը երեքին, դպրոցին սրահը: Կարեւոր օրակարգ: Կը խնդրուի ընկերուհիներէն ըլլալ ճշդապահ ։*

*ԼԻՈՆ.— Ֆ. Կ. Խաչի վարչութիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերուհիները այս չորեքշաբթի ժամը* 16*ին, Ազգ.Տան սրահին մէջ,*295 Րիւ Գուալօ: *Կարեւոր օրակարգ ։*

*Ֆ. ԿԱՊ. ԽԱՉԻ Տէսինի մասնաճիւղի վարչութիւնը ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերուհիները այս Երեքշաբթի, կէսօրէ ետք ժամը* 3*ին, դպրոցին սենեակը: Կարեւոր օրակարգ ։*

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ՍԷՆԹ ԷԹԻԷՆ.— Հ. Յ. Դ. Նոր Սե-րունդի «Բարգէն Սիւնի» խումբը ընկեր Արամ Փիլիկեանի նշանախօսութեան առ-թիւ շնորհակալութեամբ ստացած է հո-թը հազար ֆրանք :

## — ՅՈՒՇԱՏԵՏՐ —

Ֆ. Կ. ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղին ընդհ. ժողովը այս Շաբաթ կէսօրէ ետք, ժամը 4ին, Քաֆէ լը Րէժանի մէջ : Բո-լորին ներկայութիւնը անհրաժեշտ է :

### ՏՕՆԱԾԱՌԻ ՀԱՆԴԷՍ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանը կազմակերպած է տօնածառի հանդէս մը, որ տեղի պիտի ունենայ Դեկտեմբեր 20-ին, Կիրակի, ժամը 4ին :

Կը հրաւիրուին սանուհիներուն ծնողք-ները եւ հասարակութեան համակիրները :

### ԱՄԱՆՈՐԻ ԴՊՐՈՑԱԿԱՆ ՀԱՆԴԷՍ ԱԼՖՈՐՎԻԼԻ ՄԷՋ

Հոգաբարձութիւնը կը ծանուցանէ թէ կազմակերպած է Ամանորի հանդէս մը, Շաբաթ, Դեկտ. 26, երեկոյեան ժա-մը 9ին, տեղւոյս քաղաքապետական սը-րահին մէջ, Րիւ Վօլթէր :

Հովանաւորութեամբ ԵԻՐ. ՀԱՅՈՑ ԿԱԹ. ՊԱՏՈՒԻՐԱԿ Տ. ՍԵՐՈՎԲէ ԵՊՍ. ՄԱՆՈՒԿԵԱՆի : Պատուոյ Նախագահու-թեամբ քաղաքապետ Պ. ՊԼէՕՋԻ եւ ներ-կայութեամբ Փարիզի Կրթ. Կեդրոնական Յանձնախումբի ներկայացուցչին :

Գեղարուեստական ճոխ յայտագիր .— Երգ, արտասանութիւն եւ տրամախօսու-թիւն աշակերտներուն կողմէ :

Կրթ. Հոգաբարձութիւնը կը հրաւիրէ տեղւոյս Հայութիւնը իր ներկայութեամբ քաջալերելու սոյն ազգօգուտ ձեռնարկը :

Մուտքը ազատ է :

### ԸՆՏԱՆԵԿԱՆ ԽՆՋՈՅՔ

Այս Կիրակի կէսօրէ ետք ժամը 14ին, տեղի պիտի ունենայ Սեր. Դուրայի Հայր. Միութեան կազմակերպած տարե-կան խնջոյքը, Իսիի Մրիմեան դպրոցին մէջ, մինչեւ կէս գիշեր :

Արեւելեան նուագ, երգ, արտասանու-թիւն, հայկական պարեր եւ անակնկալ-ներ ն.եղւոյն վրայ :

Մուտքը ազատ է :

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Կրօն. Ընկերակցութեան վարչութիւնը կը ծանուցանէ թէ՝ այս Կիրակի մասնա-ւոր հանդիսաւոր հոգեհանգիստ պիտի կատարուի Ֆրէժիւսի խորտակուող ամ-բարտակի հեղեղներու հսկայ աղէտէն քաղաքին հարիւրաւոր նահատակներուն յիշատակին : Հայ հասարակութիւնը կը հրաւիրուի հոծ ներկայութեամբ իր մաս-նակցութիւնը արտայայտել ֆրանսական ազգային մեծ սուգին :

### Շ Ա Ւ Ի Լ

Շաւիլի Ս. Գրիգոր Լուսաւորիչ եկե-ղեցւոյ հոգաբարձութիւնը կը տեղեկա-ցընէ յարգոյ հասարակութեան թէ, այս Կիրակի, հանդիսաւոր կերպով կը տօնէ նորաշէն եկեղեցւոյ օծման Բ. տարելիցը :

Այս առթիւ Կաթ. Պատուիրակ եւ Փա-րիզի Առաջնորդ Սերովբէ Եպիսկ. Մա-նուկեան հրաւիրուած է պատարագելու եւ քարոզելու :

Եռաձայն երգեցողութիւնը կը ղեկա-վարէ երաժշտապետ Պ. Նշան Սերգոյ-եան :

Յաւարտ Ս. պատարագի հոգեհանգստ-եան պաշտօն պիտի կատարուի եկեղեց-ւոյ բարերարներու ննջեցելոց հոգւոց հանգստեան համար :

Սիրով կը հրաւիրուի հաւատացեալ ժո-ղովուրդը :

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Լաւ մեքենագրող երիտասարդ օրիորդ մը : Ներկայանալ «Յառաջ»ին :

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Հայաստանէն Ղուկասեան գիւղացի Վարսենեան Գարսամ, որմէ լուր չկայ վերջին պատերազմէն ի վեր : Փնտռողը իր ընկերն է՝ Հրաչ : Տեղեկացնել Յառաջին :



### ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ ՄԱՐՍԷՅԼԻ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

Ստիպողաբար կը խնդրուի Մարսէյլէն 10.000 ֆրանքի Շէք-Փոսթալ մը ղրկողէն հաղորդել իր անունը եւ հասցէն :

Կտրօնին վրայ Յառաջի անունը եւ հասցէն գրած է փոխանակ իր անունին :

Գումարը ղրկուած է Դեկտեմբեր 14-ին, ժամը 19ին :

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ԼԻՈՆ.— Հ. Յ. Դ. «Վարանդեան» կո-միտէն, ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերները, այս Ուրբաթ իրիկուն ժամը 20.30ին, Յոյներու սրահը : Կարե-ւոր օրակարգ :

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն հետեւեալ խումբերը ժողովի կը հրաւի-րէ.—

Շ. Միսաքեան խումբը Շաբաթ (19 Դեկտեմբեր) իրիկուն ժամը 20.30ին : Զաւարեան ենթակոմիտէն 19 Դեկտ. Շա-բաթ իրիկուն ժամը 20.30ին :

Ընկ. Կարօ խումբը 20 Դեկտ. Կիրակի կէսօրէ ետք ժամը 15ին :

ՄԱՐՍԷՅԼ.— Հ. Յ. Դ. «Քրիստափոր» ենթակոմիտէի ընդհ. ընկերական ժողովը այս Կիրակի կէսօրէ ետք ժամը 3ին : Կա-րեւոր օրակարգ :

### ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ
### ԾՆՈՒՆԴԻ ՏՕՆԱԾԱՌ
ԿԻՐԱԿԻ, 20 ԴԵԿՏԵՄԲԵՐ

Վարժարանի Ծնողաց Միութեան կազմակերպած Ծնունդի ծառի հան-դէսը կը կատարուի դպրոցի սրահին մէջ՝ ժամը 15էն 22 :

Գեղարուեստական մշակուած բա-ժին, ներկայացումներ, մրցումներ, արտասանութիւններ, երգեր աշա-կերտներու կողմէ :

Աւանդական վիճակահանութիւն՝ հարիւրաւոր թանկարժէք առարկա-ներով :

Ճոխ սեղան, հայկական եւ եւրո-պական համադամ կերակուրներով :

Սիրով կը հրաւիրուի հայ հասա-րակութիւնը :

### ՀԱՅՑԱԾԷՍ ՊԱՏԱՐԱԳ ՊԱՆԵԷՈՅԻ ՄԷՋ

Այս Կիրակի երեկոյեան ժամը 4.30ին, պիտի պատարագէ եւ քարոզէ ԳԵՐ. ՅՈՎՀԱՆՆԷՍ Վ. ՓԱՐԹԱՄԵԱՆ, Սէն Րը-նէի մատրան մէջ (83 Րիւ տ'Արքէօյ) :



Imprimerie Spéciale du Journal « Haratch »



### ՀԱՅՑԱԾԷՍ ՊԱՏԱՐԱԳ ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

Այս Կիրակի երեկոյեան ժամը 5ին, Նոթրը Տամի մատրան մէջ, հայ հաւա-տացեալներուն համար, պիտի պատարա-գէ ՅՈՎՍԷՓ ՎՐԴ. ԼԵՒՈՆԵԱՆ :

### ՀԱՅԿԱԿԱՆ ՇԱՐԺԱՆԿԱՐ

Սեբաստիոյ Նախաճգային Մուրատ Ռւ-սումնասիրաց Միութիւնը կը կազմակեր-պէ հայկական խօսուն ժապաւէններու ե-րեկոյ մը :

Երեքշաբթի, Դեկտեմբեր 22, ժամը 21ին, Սինեմա Ալհամպրա, Ավընիւ Ժան Ժօրէս, Իսի լէ Մուլինօ :

Կը ներկայացուին Հայաստանի մէջ պատրաստուած Առաջին սիրոյ երգը եւ երկու կարճ ժապաւէններ :

Մուտք 300 ֆրանք :

Տոմսերու համար դիմել.— Տիկ. Յով-սէփեանի, 20 րիւ տէ Թրավայէօր, հեռաձայն Միշըլէ 99-01 եւ Պ. Լ. Քաշի-քէմանեանի, 125 Ավընիւ Անրի Պարպիւս, Քլամար :

Դպրոցական աշակերտներու մուտքը ձրի է, մինչեւ 12 տարեկան :

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ
### ԳԵՐԱՍԻՄ ԲԱԼԱՅԵԱՆ ՍՐԱՀԻՆ

*ԿՐԸՆՈՊԼԻ Հ. Ե. Դ. Եօթնեղբայրեան ենթակոմիտէն ընկեր Գ. Բալայեանի մահուան քառասունքին առթիւ 5000 ֆր. կը նուիրէ Մշակոյթի Տան Գ. Բալայեան սրահին:*

## ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ
10 bis, RUE THOUIN

*ԱՅՍ ՀԻՆԳՇԱԲԹԻ, ճրագալոյց ծննդեան, ժամը երեկոյեան 5ին ժամերգութիւն եւ 6ին ձայնաւոր պատարագ, զոր պիտի մատուցանէ՝*

*ԳԵՐԱՊԱՅԾԱՌ ԱՄԱՏՈՒՆԻ*

*ԱՅՍ ՈՒՐԲԱԹ, Ս. Ծնունդ, ժամը 9.45-ին ժամերգութիւն եւ 10.30ին ձայնաւոր պատարագ, զոր պիտի մատուցանէ Գերապայծառ առաջնորդը:*

*Կիրակի 10 Յունուար 1960, հանդիսութիւնք Յայտնութեան եւ Մկրտութեան Քրիստոսի, ձայնաւոր պատարագ եւ Ջրօրհնէք ժամը 10.30ին:*

## —ՑՈՒՇԱՏԵՏՐ—

*Ֆ. Կ. ԽԱՉԻ՝ Փարիզի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս Շաբաթ կէս օրէ ետք ժամը չորսին Քաֆէ լը Րէժանի մէջ: Բոլորին ներկայութիւնը անհրաժեշտ է:*

## Pour Fréjus

*Իսի – Քլամառ – Մէօտէօնի մէջ հաւաքուած է 220.000 ֆրանք, որ յանձնուած է համաձայն քաղաքապետին թելադրութեան հանգանակութեան կեդրոնը (Փարիզ):*

### ՆԱՄԱԿ ՈՒՆԻ

*Հասցէի թիւրիմացութեան մը հետեւանքով Պ. Հանրի Սարաֆեան, Երեւանէն նամակ մը ստացած է որ ուղղուած է Պ. Յովհաննէսի եւ Տիկին Հեղինէի, որոնք Վազգէն անունով զաւակ մը ունին: Այս վերջինները պէտք է ստացած ըլլան Պ. Հանրի Սարաֆեանի ուղղուած նամակը: Պ. Սարաֆեան կը խնդրէ Պ. Յովհաննէսէն որ «Յառաջ»ի վարչութեան յանձնէ իր ստացած նամակը եւ անկէ ստանայ իրեն ուղղուածը: Արտասահմանի թերթերէն կը խնդրուի արտատպել.*

### ՑԱՒՑԱԿՑՈՒԹԻՒՆ

*Քամփ Մայորի (Մարսէյլ) Թաղ. Խորհուրդը կը հաղորդէ որ այս Ուրբաթ (Դեկտ. 25) թաղին եկեղեցւոյ Նորոգութեանց վերջանալու առթիւ, պաշտօնական բացում պիտի կատարուի:*

*Ծնունդի արարողութեններէն յետոյ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Ֆրէժիւսի աղէտեալներուն հոգւոյն:*

*Կը պատարագէ Տէր Խօսրով Քհնյ.:*

# ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Կազմակերպուած Ֆ. Կ. ԽԱՉԻ ՓԱՐԻԶԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻՆ ԿՈՂՄԷ
Կիրակի 3 Յունուար, ժամը 16 – 24,

HOTEL LUTETIA*ի մեծ սրահին մէջ:*

## Orchestre B. Dédédjian et ses Attractions

*Հայկական եւ կովկասեան ժողովրդական երգեր ու պարեր:*

*Կը մասնակցի «ՍՕՍԻ» երկսեռ պարախումբը, ղեկավարութեամբ եւ մասնակցութեամբ պարուսոյց Պ. Ճէրահեանի, (Պէյրութէն նոր ժամանած):*

*Օր. Թարօն իր նորագոյն մենապարերով, կ'երգեն՝* Օր. ՄԱՐՈՒՔԵԱՆ եւ Պ. ՖՆՏԳԵԱՆ:

*Խօսնակ՝ Պ. ԳԶԸՐԵԱՆ* — *Ճոխ եւ Հայկ. համադամ պիւֆէ,*

*Մուտքի տոմս՝ 500 ֆրանք, ուսանողի՝ 300 ֆր., (իրենց քարտերը ցոյց տալով):*

ԾԱՆՕԹ.— *Սեղանները ապահովել հեռախօսելով՝ Կիւթէնպէր 24-38 մինչեւ Դեկտեմբեր 30: Սեղանները պէտք է գրաւել մինչեւ ժամը 19, կազմակերպիչ յանձնախումբը պատասխանատու չէ այդ ժամէն յետոյ եկողներուն:*

### Հ. Մ. Ը. Մ.Ի ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

*Վիէնի Հ. Մ. Ը. Մ.-ի տարեկան պարահանդէսը Դեկտեմբեր 26ին, Շաբաթ իրիկուն,* Սալ տէ Ֆէթի *շքեղ սրահներուն մէջ: Առաջնակարգ նուագախումբ:*

### ԱՄԱՆՈՐԻ ԴՊՐՈՑԱԿԱՆ ՀԱՆԴԷՍ ԱԼՖՈՐՎԻԼԻ ՄԷՋ

*Հոգաբարձութիւնը կը ծանուցանէ թէ կազմակերպած է Ամանորի հանդէս մը, Շաբաթ, Դեկտ. 26, երեկոյեան ժամը 9ին, տեղւոյս քաղաքապետական սրահին մէջ, Րիւ Վոլթէր:*

*Հովանաւորութեամբ ԵՒՐ. ՀԱՅՈՑ ԿԱԹ. ՊԱՏՈՒԻՐԱԿ Տ. ՍԵՐՈՎԲԷ ԵՊՍ. ՄԱՆՈՒԿԵԱՆԻ: Պատուոյ նախագահութեամբ քաղաքապետ Պ. ՊԼԷՕԶԻ եւ ներկայութեամբ Փարիզի Կրթ. կեդրոնական Յանձնախումբի ներկայացուցչին:*

*Գեղարուեստական ճոխ յայտագիր. — Երգ, արտասանութիւն եւ թատերախօսութիւն աշակերտներուն կողմէ:*

*Կրթ. Հոգաբարձութիւնը կը հրաւիրէ տեղւոյս Հայութիւնը իր ներկայութեամբ քաջալերելու սոյն ազգօգուտ ձեռնարկը:*

Մուտքը ազատ է:

### ԾՆՈՒՆԴ
#### ՊԱՏԱՐԱԳ ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

*Այս Ուրբաթ առաւօտ Ծննդեան տօնին առթիւ պատարագ պիտի մատուցուի Րիւ Ժէ, Սէն Լուի սրահին մէջ:*

*Պիտի պատարագէ՝* Տէր Սահակ Քհնյ. Պապիկեան *(Վալանսէն):*

#### ՏԷՍԻՆ

*ՏԷՍԻՆԻ Կրօն. Ընկերակցութիւնը կը ծանուցանէ Տէսինահայ յարգոյ հայ հասարակութեան թէ, այս Ուրբաթ առաւօտ ժամը 8.30ին Ս. Ծննդեան տօնին առթիւ Ս. պատարագ պիտի մատուցուի տեղւոյս Ս. Աստուածածնայ եկեղեցւոյ մէջ:*

#### ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ
##### ՆՈՐ ՏԱՐԻ ԵՒ Ս. ԾՆՈՒՆԴ

ժամանակացոյց արարողութեանց

27 Դեկտեմբեր, Կիրակի, *Տօն Ս. Ստեփանոսի, ակիզբ ժամերգութեան ժամը 7.45ին, բազմաձայն Ս. պատարագ 9.45-ին, Ս. Ստեփանոսի յատուկ արարողութիւն 11.30ին:*

*Կը պատարագէ եւ կը քարոզէ Եկեղեցիին հոգեւոր հովիւ* Տ. Խօսրով Քհնյ. Ասատուրեան, *որուն քահանայական ձեռնադրութեան առաջին տարեդարձն է:*

(Շար.)

# ԾՆՈՒՆԴԻ ԶԱՐԹՕՆՔ
## REVEILLON

Այս Հինգշաբթի իրիկուն, ժամը 21էն մինչեւ առաւօտ, նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ՊԱՆԹԷՕ – ՔԱՇԱՆԻ խումբին:

Մշակոյթի Տան մէջ 17, Rue Bleue

Ճոխ յայտագիր, անակնկալներ *ՀԱՅԿԱԿԱՆ ՋԵՐՄ ՄԹՆՈԼՈՐՏ*

*Սիրով կը հրաւիրուին երիտասարդները եւ բոլոր անոնք որոնք կ'ուզեն հաճելի զարթօնք մը անցնել:*

## ԵՂԱՆԱԿԻՆ ԱՄԷՆԷՆ ՓԱՅԼՈՒՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ
### ՇԱՐՊՕՆԻԷՐԻ ԿՐԱՆ ՍԷՐՔԼԸ ՇՔԵՂ ՍՐԱՀՆԵՐՈՒՆ ՄԷՋ

*Ի նպաստ Լիոնի Եկեղեցւոյ Շինութեան, Եկեղեցաշէն Տիկնանց Միութեան կողմէ կազմակերպուած պարահանդէսը տեղի պիտի ունենայ Յունուար 10ին, Կիրակի օր, ժամը 16էն մինչեւ առաւօտ:*

*Փարիզի ՍՕՍԻ Ֆոլքլորիկ խումբը պիտի ճոխացնէ այս պարահանդէսը, հայկական հաճելի եւ ինքնուրոյն պարերով եւ երգերով:*

*Մասնակցութեամբ ԱՐՄԵՆԻԱ նուագախումբին եւ ղեկավարութեամբ ՊԵՐՆԱՐ ՏԷՏԷՃԵԱՆԻ:*

*Նոյնպէս* Շարպօնիէրի *միջազգային խումբին* աքրաֆսիոններով *եւ նուագախումբով ճոխացած:*

*Տեղերը սահմանափակ ըլլալով, կը խնդրուի յարգոյ հայ ժողովուրդէն, այժմէն ապահովել իրենց սեղաններն ու տոմսերը:*

*Հեռաձայնել.— 28-54-03 եւ կամ ժամը 16էն յետոյ 60-47-18:*

# ՀԱՅԿԱՆՈՅՇ ԹՈՐՈՍԵԱՆ
## Le Menestrel Microsillon 33 tours 1/3
### (Série Artistique)

*Ա. ՇԱՐՔ, Թիւ 1* (10 Աշխարհիկ երգեր) 3.000 Ֆր.
*Բ. ՇԱՐՔ, Թիւ 2 (3 կրօնական եւ 9 աշխարհիկ երգեր)* 3.000 Ֆր.
*Գ. ՇԱՐՔ, Թիւ 3 (Աշխարհիկ երգեր), պատրաստութեան մէջ:*

Դիմել՝ *ՓԱՐԻԶ*.— Հայկանոյշ Թորոսեան, 221, Rue de Tolbiac Tél. KEL. 34-24
Տիկ. Քիւրքճէրեան, *Հայոց եկեղեցին*, 15, Rue Jean Goujon ELY. 67-03
*ՄԱՐՍԷՅԼ*.— ALKAZ et FILS, 23, Rue Sainte-Barbe
*ՏԷՍԻՆ*.— Սիրունեան, «ARAX», 110, Avenue Jean Jaurès





Imprimerie Spéciale du Journal « Haratch »

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Գարտէ կը զգամ հրապարակով իմ շընորհակալութիւններս յայտնել Փարիզաբնակ բժշկուհի Օր. Սոնա Փափազեանի, որ անբուժելի նկատուած ծանր հիւանդութեանս ընթացքին իր անձնուէր խընամքներով դարմանեց զիս եւ փրկեց ծանըր կացութենէ։

ՄԱՍԻՍ ՁԻԼԻՆԿԻՐԵԱՆ

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այրի Տիկին Սարգիս Տէօքմէճեան եւ զաւակները՝ Արփինէ եւ Ցոլինէ կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պատարագ եւ պաշտօն պիտի կատարուին այս Կիրակի առաւօտ Փարիզի Ս. Յովհաննէս Մկրտիչ եկեղեցւոյ մէջ, իրենց ամուսնոյն եւ հօր՝

ՍԱՐԳԻՍ ՏԷՕՔՄԷՃԵԱՆԻ

մահուան քառասունքին առթիւ։

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները։

Այս առթիւ Այրի Տիկին Տէօքմէճեան եւ զաւակները նուիրատուութիւններ կ'ընեն հետեւեալ կազմակերպութիւններուն.— Կարմիր խաչ, Կապ. խաչ, Աղքատախնամ, Մշակոյթի Տուն, «Հայ — Բոյժ», Ս. Մուրատեան վարժարանի Ծնողաց Միութիւն եւ Յառաջ։

(Կազմակերպութիւնները կրնան ստանալ իրենց յատկացուած գումարները «Յառաջ»էն)։

×

Այս Կիրակի առաւօտ Փարիզի Ս. Յովհաննէս — Մկրտիչ եկեղեցւոյ մէջ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի

ՎԱՀԱՆ ՁԷՅԹՈՒՆՑԵԱՆԻ

մահուան (մեռած Հարաւային Ամերիկա) քառասունքին առթիւ։

Կը հրաւիրուին ողբացեալին յիշատակը յարգողները.

## ՆՈՒԷՐՆԵՐ

Ազատ Մարգիկ իր սկաուտ խմբապետի Լեւոն Գազանճեանի (Սոֆիա) եւ Կեդրոնականի տնօրէն Գեղամ Գափաֆեանի մահուան առթիւ հազարական ֆր. կը նուիրէ «Յառաջ»ի եւ «Հայ—Բոյժ»ի։

## Pour Fréjus

Մարսէյլի մէջ, Դեկտեմբեր 5ի Հ. Մ. Ը. Մ.ի պարահանդէսին մէջ հանգանակուած է 20.000 Ֆր., Միութիւնը 10.000 ֆրանք ալ իր կողմէ աւելցնելով՝ 30.000 ֆրանք ղրկած է հանգանակիչ յանձնախումբին։

×

Այդ պարահանդէսին վիճակահանութեան չահող թիւն է՝ 594 (հեռատեսիլի գործիք մը)։ Ստանալ Միութենէն։

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Ֆ. Կ. Խաչի Փարիզի մասնաճիւղը շընորհակալութեամբ ստացած է իր պարահանդէսին եւ տօնական օրերու առթիւ հետեւեալ դրամական նուէրները.—

Օր. Զէյթունլեանէ (Լիբանանէն) հազար ֆրանք, Օր. Թարոնէ 500 ֆրանք։

## ԴՊՐՈՑԱԿԱՆ ՀԱՆԴԷՍ ՓՈՆ ՏԸ ՇԷՐԻԻ ՄԷՋ

Ազգ. Միութեան հովանաւորութեամբ դպրոցական հանդէսը՝ այս Կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, Գաթ Գուսօն (Փըթի Շալէ), Գ. Մանուէլ Գալիկեանի սրահը, ղեկավարութեամբ Գ. Թրազոյի։

Ազգ. Միութեան կողմէ նախընթրիք պիտի բաժնուի բոլոր անոնց որոնք դպրոց երթալու տարիք կը ներկայացնեն։ Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ։ Մուտքը ազատ է։

## ԱՄԱՆՈՐԻ ԴՊՐՈՑԱԿԱՆ ՀԱՆԴԷՍ ԱԼՖՈՐՎԻԼԻ ՄԷՋ

Հոգաբարձութիւնը կը ծանուցանէ թէ կազմակերպած է Ամանորի հանդէս մը, Շաբաթ, Դեկտ. 26, երեկոյեան ժամը 9ին, տեղւոյս քաղաքապետական սրահին մէջ, Րիւ Վոլթէր։

Հովանաւորութեամբ ԵՒՐ. ՀԱՅՈՑ ԿԱԹ. ԳԱՏՈՒԻՐԱԿ Տ. ՍԵՐՈՎԲԷ ԵՊՍ. ՄԱՆՈՒԿԵԱՆԻ։ Գատուոյ նախագահութեամբ քաղաքապետ Գ. ԳԼԷՕԶԻ եւ ներկայութեամբ Փարիզի Կրթ. Կեդրոնական Յանձնախումբի ներկայացուցչին։

Գեղարուեստական ճոխ յայտագիր.— Երգ, արտասանութիւն եւ տրամախօսութիւն աշակերտներուն կողմէ։

Կրթ. Հոգաբարձութիւնը կը հրաւիրէ տեղւոյս Հայութիւնը իր ներկայութեամբ քաջալերելու սոյն ազգօգուտ ձեռնարկը։

Մուտքը ազատ է։

## ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

ՀԻՆ ՏԱՐՈՒԱՆ ՀԵՏ
ՓԱԿԵՑԷՔ
ՁԵՐ ՀԻՆ ՀԱՇԻՒՆԵՐԸ

**Նոր Տարի**
**Նոր Ծրանք**
**Նոր Բաժանորդին**

Շնորհակալութեամբ.
ՎԱՐՉՈՒԹԻՒՆ «ՅԱՌԱՋ»Ի

## Հ. Մ. Ը. Մ.Ի ՏԱՐԵԿԱՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

Վիէնի Հ. Մ. Ը. Մ.ի տարեկան պարահանդէսը Դեկտեմբեր 26ին, Շաբաթ իրիկուն, Սալ տէ Ֆէթի շքեղ սրահներուն մէջ։ Առաջնակարգ նուագախումբ։

## —ՑՈՒՇԱՏԵՏՐ—

Ֆ. Կ. ԽԱՉԻ Փարիզի մասնաճիւղի ընդհ. ժողովը այս Շաբաթ կէս օրէ ետք ժամը չորսին Քաֆէ լը Րէժանի մէջ։ Բոլորին ներկայութիւնը անհրաժեշտ է։

## Ս. ՍՏԵՓԱՆՈՍ

Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյ մէջ այս Կիրակի օր պիտի մատուցուի Ս. Ստեփանոսի տօնին առթիւ քառաձայն Ս. պատարագ, յետ պատարագի խորհրդարանին մէջ ընդունելութիւն պիտի ըլլայ ի պատիւ դպրաց դասու հոգաբարձութեան կողմէ։

Նոյն օրը Բիւթանիոյ հայրենակիցներու խնդրանքով հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Նիկոմիդիոյ բազմավաստակ Առաջնորդ ՍՏԵՓԱՆՈՍ ԱՐՔ. ՅՈՎԱԿԻՄԵԱՆԻ յիշատակին։

Կը հրաւիրուի հայ հասարակութիւնը։

Կը պատարագէ եւ կը քարոզէ Զաւէն Վրդ. Արզումանեան։

×

Լիոնի Ազգային Միութեան փափաքին համաձայն այս Կիրակի Ս. Ստեփանոսի տօնին առթիւ, հոգեհանգստեան պատարագ պիտի մատուցուի, Իզմիրի բարեխնամ, շինող Առաջնորդ Ստեփանոս Արք. Յովակիմեանի ի յիշատակ։

Կը խնդրուի նոյն օրը իր յիշատակը յարգող բարեպաշտ ազգայիններէ ներկայ ըլլալ պատարագի։

## ԾՆՈՒՆԴ ԳԱՍՏԱՐԱԳ ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

Այս Ուրբաթ առաւօտ Ծննդեան տօնին առթիւ պատարագ պիտի մատուցուի Ռիւ ժէ, Սէն Լուի սրահին մէջ։

Պիտի պատարագէ՝ Տէր Սահակ Քհնյ. Պապիկեան (Վալանսէն)։

### ՏԷՍԻՆ

ՏԷՍԻՆԻ Կրօն. Ընկերակցութիւնը կը ծանուցանէ Տէսինահայ յարգոյ հայ հասարակութեան թէ, այս Ուրբաթ առաւօտ ժամը 8.30ին Ս. Ծննդեան տօնին առթիւ Ս. պատարագ պիտի մատուցուի տեղւոյս Ս. Աստուածածնայ Եկեղեցւոյ մէջ։

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ ՆՈՐ ՏԱՐԻ ԵՒ Ս. ԾՆՈՒՆԴ

Ժամանակացոյց արարողութեանց

27 Դեկտեմբեր, Կիրակի, Տօն Ս. Ստեփանոսի, սկիզբ ժամերգութեան ժամը 7.45ին, բազմաձայն Ս. պատարագ 9.45ին, Ս. Ստեփանոսի յատուկ արարողութիւն 11.30ին։

Կը պատարագէ եւ կը քարոզէ Եկեղեցիին հոգեւոր հովիւ Տ. Խոսրով Քհնյ. Ասատուրեան, որուն քահանայական ձեռնադրութեան առաջին տարեդարձն է։

(Շար.)

## ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

10 bis, RUE THOUIN

ԱՅՍ ՀԻՆԳՇԱԲԹԻ, Ճրագալոյց Ծննդեան, ժամը երեկոյեան 5ին ժամերգութիւն եւ 6ին ձայնաւոր պատարագ, զոր պիտի մատուցանէ՝

ԳԵՐԱՊԱՅԾԱՌ ԱՄԱՏՈՒՆԻ

ԱՅՍ ՈՒՐԲԱԹ, Ս. Ծնունդ, ժամը 9.45ին ժամերգութիւն եւ 10.30ին ձայնաւոր պատարագ, զոր պիտի մատուցանէ Գերապայծառ առաջնորդը։

Կիրակի 10 Յունուար 1960, հանդիսութիւնք Յայտնութեան եւ Մկրտութեան Քրիստոսի, ձայնաւոր պատարագ եւ Ջրօրհնէք ժամը 10.30ին։









## ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

Քամփ Ֆրէզի (Մարսէյլ) Թաղ. Խորհուրդը կը հաղորդէ որ այս Ուրբաթ (Դեկտ. 25) թաղին եկեղեցւոյ Նորոգութեանց վերջանալու առթիւ, պաշտօնական բացում պիտի կատարուի։

Ծնունդի արարողութենէն յետոյ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի Ֆրէժիւսի աղէտեալներուն հոգւոյն։

Կը պատարագէ Տէր Խոսրով Քհնյ.։

## ՓԱՐԻԶԻ ՀԱՅ ԱՒԵՏԱՐԱՆ. ԵԿԵՂԵՑԻ

8 bis, Rue des Ternes

Մեթրօ Փորթ Մայօ

Պաշտամունք այս Կիրակի առաւօտ ժամը 10.45ին։

## ՀԱՅ ԱՒԵՏԱՐԱՆԱԿԱՆ ՄԿՐՏՉ. ԵԿԵՂԵՑԻ ՄԱՐՍԷՅԼ

Պաշտամունք՝ այս կիրակի, Սէն Ժէրոմ, ժամը 9,30ին։ Ռիւ Ժէմափ՝ ժամը 10,45ին։

Կը քարոզէ Վերապատուելի Հելվաճեան։



Imprimerie Spéciale du Journal « Haratch »

դժուարութիւնները, Խրուշչեւի նամակին ոճն ու Արեւմտեաններու յայտարարութիւնները ցոյց կուտան թէ Մեծերու ժողովը պիտի գումարուի: Հետեւաբար, Թուականի պարզ փոփոխութիւն մը դիւրութեամբ կրնայ կատարուիլ :

Խրուշչեւ Այզընհաուըրի գրած նամակին մէջ կը յայտարարէ. — Ամէն բանէ առաջ կ'ուզեմ յայտնել խոր գոհունակութիւնս այն կէտին համար, որ դուք, Վարչապետ Մաքմիլըն եւ Նախագահ տը Կոլ կը փափաքիք որ համաշխարհային կարեւոր հարցերու քննութեան համար Մեծերու հանդիպումները յաճախակի ըլլան, ժողովին մասնակցող երկիրներու մէջ: Խորհրդային կառավարութիւնը կ'ողջունէ նման յայտարարութիւն մը : Կ'ընդունինք, որ Մեծերու հանդիպումը տեղի ունենայ Փարիզի մէջ :

Անգլիոյ Արտաքին նախարարութեան բանբերը այս առիթով յայտարարեց. — Գոհ ենք որ Խրուշչեւ ընդունած է Փարիզի հանդիպումը եւ յաճախակի ժողովներ գումարելու մեր առաջարկը :

Փարիզի պաշտօնական շրջանակները իրենց գոհունակութիւնը յայտնելով, կ'աւելցնեն թէ ոչ մէկ կասկած կարելի է ունենալ՝ որ Թուականին շուրջ համաձայնութիւն մը պիտի գոյանայ :

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

ԳԵՐԱՍԻՄ ԲԱԼԱՅԵԱՆ ՍՐԱՀԻՆ

| | |
|---|---|
| Օր. Թագուհի Գնդունի | 1.000 |
| Պ. Գասպարեան | 1.000 |
| Հ. Յ. Դ. Կրընօպլի կոմիտէ | 5.000 |
| (Վերջին երկու գումարները արդէն յայտարարուած են) : | |
| Գումար | 7.000 |
| Նախորդ գումար | 1.484.500 |
| Ընդհ. գումար | 1.491.500 |

×

Նիսէն Հ. Յ. Դ. Գէորգ Չաւուշ խումբը իր ցաւակցութիւնները կը յայտնէ Պ. Պ. Մամբրէ Աչօղանեանի եւ Լեւոն Արսլանեանի իրենց աներհօր եւ եղբօր Եղիշէ Քէպապճեանի մահուան առթիւ եւ փոխան ծաղկեպսակի 2000 Ֆրանք կը նըւիրէ Շաւարշ Միսաքեան սրահին :

(Ստանալ «Յառաջ»էն) :

Տիկին Յ. Գալըպճեանէ (էքս - Լէ-Պէն) 10.000 Ֆրանք, իր հօր մահուան տարելիցին առթիւ :

ԼՈՅՍ ԿԸ ՏԵՍՆԷ ՇՈՒՏՈՎ

## ՄԵՂՈՒԻՆ ՃԱՌԸ

Գրեց՝ ՇԱՒԱՐՇ ՆԱՐԴՈՒՆԻ

Բոլոր անոնք որ արձանագրուած են կամ վճարած, պիտի ստանան փոստով՝ առաջին առթիւ: Ստացագիր չի ղրկուիր:

Imprimerie Spéciale du Journal « Haratch »

## "ՅԱՌԱՋ" ԿԸ ՆՈՒԻՐԵՆ

ՆՈՐ ՏԱՐՈՒԱՆ ԱՌԹԻՒ

Պ. Յակոբ Եագուպեան մէկ տարեկան «Յառաջ» կը նուիրէ իր եղբօր՝ Աւետիս Եագուպեանի :

ՄԵՐ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐՈՒՆ

ՀԻՆ ՏԱՐՈՒԱՆ ՀԵՏ

ՓԱԿԵՑԷՔ

ՁԵՐ ՀԻՆ ՀԱՇԻՒՆԵՐԸ

Նոր Տարի

Նոր Արանք

Նոր Բաժանորդներ

Շնորհակալութեամբ.

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ «ՅԱՌԱՋ»Ի

## ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Կապ. Խաչի Ալֆորվիլի վարչութիւնը իր ցաւակցութիւնները կը յայտնէ Տիկին Իլիմանճայ Կակոյեանի եւ ընտանեկան բոլոր պարագաներուն ողբացեալ Սիրուն Կակոյեանի մահուան առթիւ, եւ փոխան ծաղկեպսակի երեք հազար Ֆր. կը նըւիրէ տեղւոյն աղքատներուն:

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ "ՕՐԸ" ԼԻՈՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Ֆ. Կապ. Խաչի Լիոնի մասնաճիւղին :

Կիրակի Յունուար 3 կէսօրէ վերջ ժամը 3ին Սթիւտիօ Քոէֆիի մէջ, 24 Րիւ Տիւնուար :

Գեղարուեստական ճոխ բաժին, որուն կը մասնակցի Հայկազեան Վարժարանի աշակերտութիւնը, ղեկավարութեամբ՝ ուսուցչուհի Օր. Ստեփանեանի :

Երգ, արտասանութիւն, եւ տրամախօսութիւն մը: Հայկական պարեր :

Երեք լաւ արտասանող փոքրիկներու գնահատանքի մրցանակ պիտի տրուի օրուան դատական կազմին կողմէ:

Հայ Կաղանդ Պապան Նոր տարուան առթիւ նուէրներ պիտի բաժնէ ներկայ բոլոր փոքրիկներուն:

Մուտքը ազատ է :

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Սարգիս (կամ Սերգօ) Տէր Թովմասեանին (կամ՝ Թովմասեանին): Ծնած 1914 Թ., Ղամարլուի շրջանի Չիկդամլու գիւղում: 1941 Թ. Նոյեմբերին Ռոստովի առաջին ճակատամարտից յետոյ, անյայտ կորած է :

Ով լուր ունեցողից (ռազմաճակատում, կամ գերութեան մէջ՝ սպաննուած, մեռած կամ ողջ), կը խնդրուի յայտնել «Յառաջ»ի խմբագրութեան :



## ԵՂԱՆԱԿԻՆ ԱՄԷՆԷՆ ՓԱՅԼՈՒՆ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

### ՇԱՐՊՕՆԻԷՐԻ ԿՐԱՆ ՍԷՐՔԼԸ ՇՔԵՂ ՍՐԱՀՆԵՐՈՒՆ ՄԷՋ

Ի նպաստ Լիոնի Եկեղեցւոյ Շինութեան, Եկեղեցաշէն Տիկնանց Միութեան կողմէ կազմակերպուած պարահանդէսը տեղի պիտի ունենայ Յունուար 10ին, Կիրակի օր, ժամը 16էն մինչեւ առաւօտ :

Փարիզի ՍՕՍԻ Ֆօլքլորիկ խումբը, ղեկավարութեամբ Տիկին Քիւբնէրեանի, եւ մասնակցութեամբ Պ. Ճէրահեանի պիտի ճոխացնէ այս պարահանդէսը, հայկական հաճելի եւ ինքնուրոյն պարերով եւ երգերով :

Մասնակցութեամբ ԱՐՄԵՆԻԱ նուագախումբին ղեկավարութեամբ ՊԵՐՆԱՐ ՏԷՏԷՃԵԱՆԻ :

Նոյնպէս Շարպօնիէրի միջազգային խումբին աթրաքսիոններով եւ նուագախումբով ճոխացած :

Տեղերը սահմանափակ ըլլալով, կը խնդրուի յարգոյ հայ ժողովուրդէն, այժմէն ապահովել իրենց սեղաններն ու տոմսերը :

Հեռաձայնել.— 28-54-03 եւ կամ ժամը 16էն յետոյ 60-47-18:

